## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱԴՐԱՆՔՆԵՐԸ

*ԱՅՍ ՕՐԵՐԻՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ՄԵԾ ԵՐԿՐԻ բազմամիլիոն աշխատավորները ստեղծագործական ջանքերով կենսագործում են ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները, դրանով իսկ ավելի հզորացնելով ու ծաղկուն դարձնելով մեր սոցիալիստական հայրենիքը:*

*ՍՄԿԿ XXV համագումարի հոյակապ կանխագծումների իրականացման համաժողովրդական պայքարում արժանի ավանդ են մուծում նաև մեր հանրապետության աշխատավորները: Նրանք իրենց ողջ եռանդն ու ունակությունները ծառայեցնում են կուսակցության առաջադրած նոր, վիթխարի խնդիրների լուծմանը: Արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, կառույցներում, գիտական հաստատություններում տասներորդ հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար ծավալվել է սոցիալիստական լայն մրցություն: Հանրապետության կուսակցական կազմակերպությունները, գլխավորելով մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, կազմակերպական մեծ աշխատանք են կատարում սոցիալիստական մրցությանն առավել հզոր թափ հաղորդելու համար: Ընդ որում, շեշտը դրվում է նոր հնգամյակի գլխավոր խնդրի՝ արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման վրա:*

*Կատարված լուրջ աշխատանքը տվել է իր դրական արդյունքը: Հանրապետության արդյունաբերության աշխատողները, հաջողությամբ իրականացնելով 1976 թվականի ստանձնած պարտավորությունները, արտադրանքի իրացման չորս ամիսների պլանը կատարել են 102,8 տոկոսով, արտադրության ծավալը մեծացրել 8 տոկոսով: Գյուղատնտեսության աշխատողները ժամկետից շուտ կատարեցին անասնապահական մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի չորս ամիսների պլանը: Մսի արտադրությունն ավելացավ 12,8, կաթինը՝ 6,2 տոկոսով:*

*Իրենց սոցիալիստական պարտավորությունները լավ են կատարում նաև տրանսպորտի և կապի, շինարարության աշխատողները:*

*Սովետական Հայաստանի էկոնոմիկայի բնագավառի աշխատողների ձեռք բերած այս նվաճումները հիմք են տալիս վստահորեն ասելու, որ նրանք, կուսակցական կազմակերպությունների գլխավորությամբ, ավելի կամրապնդեն այդ հաջողությունները, կկատարեն տասներորդ հնգամյակի բոլոր առաջադրանքները, կուսակցության XXV համագումարի որոշումները:*

*Այս վեհ նպատակի իրականացման համար անհրաժեշտ է ուժերի և ունակությունների գերագույն լարում, ջանասեր և կազմակերպված ամենօրյա աշխատանք: Իսկ անելիքները շատ են, լուծվելիք հարցերը բարդ ու դժվարին, բայց, միաժամանակ, կոնկրետ և իրագործելի: ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» հայտնի որոշմամբ, որը հիմնականում մարմնավորվել է հանրապետության 1976—1980 թթ. ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանում, հիրավի, լուրջ ու պատասխանատու խնդիրներ են առաջադրված մեր հանրապետության կուսակցական կազմակերպություններին, բոլոր աշխատավորներին: Բավական է ասել, որ Սովետական Հայաստանի ազգային եկամուտը 1980 թվականին, 1975 թ. համեմատությամբ, աճելու է 36 տոկոսով, արդյունաբերական արտադրության ծավալը՝ 43—47*

գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալը՝ 25—28 տոկոսով։ Նոր հնգամյակում հանրապետության գյուղատնտեսության մեջ կներդրվի 1,24 միլիարդ ռուբլի։ Պետական կապիտալ ներդրումները, իններորդ հնգամյակի համեմատությամբ, կավելանան 25—28 տոկոսով։ Տասներորդ հնգամյակում նախատեսվում է գործարկել գրեթե 70 տոկոսով ավելի հիմնական ֆոնդեր, քան նախորդ հնգամյակում։ Այսինքն՝ Սովետական Հայաստանում կգործարկվեն այնքան հիմնական ֆոնդեր, որքան հիսուն տարիների (1921—1970 թթ.) ընթացքում։

Այսպիսով, հանրապետության բոլոր աշխատողները, շարքայինից մինչև ղեկավարները, պետք է համառորեն, հաստատակամորեն և մեծ նվիրումով պայքարեն կենսագործելու համար այս մասշտաբային ու վեհասքանչ կանխագծումները։

Տասներորդ հնգամյա պլանն ամբողջովին ու պատվով կատարելու համար, միաժամանակ, անհրաժեշտ է հիմնովին վերացնել այն բոլոր թերություններն ու բացերը, որոնք խոչընդոտում են հանրապետության էկոնոմիկայի զարգացմանը, մեր ընդհանուր առաջընթացին։ Արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և կապի բնագավառներում դեռևս կան շատ թերություններ, չլուծված պրոբլեմներ, որոնց հաղթահարմամբ սկզբունքային հետևողականությամբ զբաղվում են ՀԿԿ Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան և հուլիսյան պլենումներում, ՀԿԿ XXVI համագումարում խորությամբ ու համակողմանիորեն քննարկվեցին հանրապետության տնտեսական, կուլտուրական շինարարության ասպարեզում և կուսակցական աշխատանքում առկա իրավիճակը։ Ըստ արժանվույն գնահատելով ձեռք բերված նվաճումները, միաժամանակ, վերհանվեցին եղած թերություններն ու սխալները, հստակ ու պարզ նշվեցին առաջիկա անելիքներն ու խնդիրները։

ՀԿԿ XXVI համագումարն արձանագրեց, որ հանրապետությունում անբավարար են բացահայտվում և օգտագործվում ներքին ռեզերվները, կան զգալի թվով ետ մնացող ձեռնարկություններ, որտեղ դանդաղ են իրականացնում արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, արտադրանքի որակի բարձրացման ու դրա ինքնարժեքի իջեցման աշխատանքները։

Ելնելով վերոհիշյալից, հանրապետության կուսակցական կազմակերպությունները լայն պայքար են ծավալել արդյունաբերության, շինարարության, կապի ու տրանսպորտի, գյուղատնտեսության բնագավառներում եղած սխալներն ու թերությունները վերացնելու, հնգամյակի պլանները հաջողությամբ ու ժամանակին կատարելու համար։

Այս տարվա մայիսին ՀԿԿ Կենտկոմի պլենումը քննարկեց «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո կապիտալ շինարարության պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու միջոցառումների մասին» հարցը։ Պլենումը նշեց, որ հանրապետության շինարարական և մոնտաժային կազմակերպությունների կոլեկտիվները, աշխատելով «կառուցել արագ, խնայողաբար և ժամանակակից տեխնիկական հիմքի վրա» նշանաբանով, ակտիվորեն պայքարում են կապիտալ շինարարության հարաճուն պլանների կատարման համար։ Այդ ասպարեզում շինարարական շատ կազմակերպություններ հասել են որոշակի հաջողությունների։

Պլենումը կուսակցական սկզբունքայնությամբ քննարկեց կապիտալ շինարարության գործերի վիճակը, ժողովրդական տնտեսության այդ կարևոր բնագավառի գործունեության արդյունավետության բարձրացման հարցերը։ Պլենումը, միաժամանակ, բացահայտելով կապիտալ շինարարության ասպարեզում առկա լուրջ թերությունները, նշեց դրանց վերացման ուղիները, կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների հիմնական խնդիրը համարեց՝ անշեղորեն կենսագործել ՍՄԿԿ XXV համագումարի ցուցումները՝ կապիտալ ներդրումների արդյունավետությունը բարձրացնելու, շինարարական արտադրության պլանավորման, նախագծման, կազմակերպման ու հետագա ինդուստրացման, շինարարության տևողության կրճատման ու արժեքի իջեցման հաշվին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արտադրական նոր կարողություններն արագորեն գործարկելու և յուրացնելու մասին։

Նոր հնգամյակում մեծ անելիքներ ունեն գյուղատնտեսության բնագավառի աշխատողները։ ՍՄԿԿ XXV համագումարում նշվեց, որ կուսակցությունն այդ ասպարեզում հետապնդում է փոխկապակցված երկու նպատակ։ Առաջին, երկրին հուսալիորեն մատակարարել պարենամթերք և գյուղատնտեսական հումք, դրա համար միշտ ունենալ բավարար ռեզերվներ։ Երկրորդ, առավել մերձեցնել քաղաքի ու գյուղի նյութական ու կուլտուր-կենցաղային պայմանները։ Կուսակցության այս երկու նպատակներն ունեն տնտեսական ու քաղաքական սկզբունքային նշանակություն, լիովին համապատասխանում են կոլտնտեսային գյուղացիության և բանվոր դասակարգի արմատական շահերին։

Ղեկավարվելով ՍՄԿԿ այս ցուցումներով, ՀԿԿ Կենտկոմը, հանրապետության կուսակցական կազմակերպությունները վերջին շրջանում որոշակի աշխատանք են կատարել գյուղատնտեսական արտադրության, հատկապես խաղողագործության ու պտղաբուծության զարգացումն արգելակող թերությունները վերացնելու ասպարեզում։ Մշակվել ու կենսագործվում են մի շարք միջոցառումներ, որոնց իրականացմամբ ընթացիկ հնգամյակում կկատարվեն խաղողի արտադրության պլանները։ Միայն այս տարվա գարնանը հիմնվել են 250 հեկտար խաղողի և 384 հեկտար պտղատու այգիներ։ 9.200 հեկտարի վրա վերականգնվել է խաղողի այգիների լիարժեքությունը։ 1976 թվականին գյուղատնտեսական շրջանառության մեջ են ներառվել ավելի քան 20 հազար հեկտար նոր հողատարածություններ։

Զգալիորեն ավելացել են անասունների մթերատվությունը անասնապահական մթերքների արտադրությունն ու վաճառքը։ Ընթացիկ տարում պետությանն ավելի է վաճառվել 1.260 տոննա միս, 2.700 տոննա կաթ։ Ներկայումս հանրապետության տնտեսություններում ինտենսիվ բտվում են 40 հազար գլուխ մատղաշներ, որը 12 հազարով ավելի է, քան անցյալ տարի։

Կերի կայուն բազա ստեղծելու նպատակով արդեն այս տարում արմատապես կբարելավվեն 2.000 հեկտար, իսկ թեթևակի՝ 1.100 հեկտար բնական խոտհարքներ։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը քննարկել է նաև արտադրամասերի կառուցման հարցը։ Մինչև այս տարվա վերջը հանրապետության տնտեսություններում կգործեն կերի պատրաստման 149 արտադրամասեր, կարբամիդային կոնցենտրատի պատրաստման համար շահագործման կհանձնվեն 18 մեքենայացված հարմարանքներ։

Գյուղատնտեսության բնագավառի աշխատողները, որոնք գտնվում են կուսակցության ագրարային քաղաքականությունը կենսագործելու համար մղվող պայքարի առաջավոր բնագծերում, պետք է բոլոր ուժերն ի սպաս դնեն հաջողությամբ լուծելու իրենց առջև դրված հիրավի հսկայական խնդիրները։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման, քաղաքի ու գյուղի աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավման, առևտրի կատարելագործման հարցերը շարունակ եղել են մեր կուսակցության ուշադրության կենտրոնում։ Նշելով այս բնագավառում կատարված դրական մեծ աշխատանքը, ընկեր Լ. Ի. Բրեժնևը, ՍՄԿԿ XXV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ, քննադատեց նաև պլանային և տնտեսական մարմինների գործունեությունը, որոնք անբավարար հոգատարություն են ցուցաբերել թեթև, սննդի արդյունաբերության և սպասարկման ոլորտի նկատմամբ։ «Շարունակելով ավելացնել կապիտալ ներդրումները «բ» խմբի ճյուղերի և դրանց սպասարկող արտադրությունների, առևտրի մեջ և ծառայությունների ոլորտում,— ասվեց համագումարում,— անհրաժեշտ է բարձրացնել պահանջները նրանց հանդեպ, ովքեր պլանավորում են էկոնոմիկայի այդ հատվածի զարգացումը և ղեկավարում այն»։

Մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները, ղեկա-

վարվելով կուսակցության ցուցումներով, հստակ ու սկզբունքային կուրս են վերցրել արմատապես բարելավելու թեթև, սննդի արդյունաբերության, առևտրի և կենցաղային սպասարկման ձեռնարկությունների աշխատանքը, խիստ վերահսկողություն սահմանել դրանց գործունեության նկատմամբ:

Այսպես, օրինակ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների սովետը համատեղ քննարկել են «Հայկական ՍՍՀ կենցաղային սպասարկման վիճակի և դրա հետագա զարգացման միջոցառումների մասին» հարցը: Կենցաղային սպասարկման մինիստրությունը որոշակի գործ է արել ընդունված որոշումը կատարելու ասպարեզում, բայց ժողովրդական տնտեսության այդ ճյուղը դեռևս չի կարողացել լիովին իրականացնել կուսակցության առաջադրած պահանջները: Հատկապես լուրջ թերություններ կան գյուղական բնակչության սպասարկման գործում: Ուստի բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությունը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային գործադիր կոմիտեները պետք է հետևողականորեն կենսագործեն կուսակցության կանխագծումները և դրանցից բխող՝ ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի վերոհիշյալ որոշումը, բնակչության կենցաղային սպասարկման ոլորտը դարձնեն ժողովրդական տնտեսության զարգացած, մեքենայացված խոշոր ճյուղ, որը լիովին ապահովի գյուղի և քաղաքի բնակչության աճող պահանջմունքները:

ՀԿԿ Կենտկոմի և հանրապետության Մինիստրների սովետի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ զգալիորեն ամրապնդվել է առևտրի նյութատեխնիկական բազան: Միայն պետական առևտրի գծով վերջին տարիներին կառուցվել և շահագործման են հանձնվել 17 հազար տ. տարողությամբ սառնարանային տնտեսություն, 16 հազար տ. տարողությամբ կարտոֆիլի, բանջարեղենի ու մրգերի և 20,9 հազար ք. մ. ընդհանուր ապրանքային պահեստներ: Բայց, չնայած այս ամենին, հանրապետության պահեստային տարածությունները հնարավորություն չեն ընձեռում ամբողջ տարին կարտոֆիլով և բանջարեղենով լիովին բավարարելու բնակչությանը: Ուստի ՀԿԿ Կենտկոմը արմատական միջոցառումներ է մշակել առևտրի նյութատեխնիկական բազան զարգացնելու համար:

Տասներորդ հնգամյակում հանրապետությունում կկառուցվեն և շահագործման կհանձնվեն 22,1 հազար տ. տարողությամբ սառնարանային հզորություններ, 30,7 հազար տ. տարողությամբ կարտոֆիլի, բանջարեղենի և մրգերի ու 87,9 հազար ք.մ. ընդհանուր ապրանքային պահեստներ: Այս ամենը հնարավորություն կտա հնգամյակի վերջում հանրապետության բնակչությանը կլոր տարին մատակարարելու բանջարեղեն ու մրգեր: Անհրաժեշտ է, որ կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները առավել հետևողականորեն ու լրջորեն զբաղվեն տնտեսական ու քաղաքական կարևոր նշանակություն ունեցող այս հարցով և ժամանակին ու ամբողջությամբ կատարեն այս բնագավառի ծրագրումները:

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ հիրավի հսկայական ու հերոսական գործեր պետք է կատարի սովետական ժողովուրդը: Ինչպես բոլոր հնգամյակները, ընթացիկ հնգամյա պլանը ևս բովանդակում է մեր մեծ Միության եղբայրական բոլոր հանրապետությունների, բոլոր ազգերի ու ազգությունների էկոնոմիկայի և կուլտուրայի ներդաշնակ զարգացման վեհ ծրագիր, որի կենսագործման համար պահանջվում է կատարել ստեղծագործական մեծ ու բազմաբեղուն աշխատանք: Այդ ծրագրի իրականացմամբ սովետական ժողովուրդն առաջընթաց նոր քայլ կկատարի կոմունիզմի կառուցման ճանապարհին:

ՍՄԿԿ XXV համագումարի սոցիալ-տնտեսական ծրագիրը խարսխվում է արդի զարգացած սոցիալիստական հասարակարգի իրական լայն հնարավորությունների վրա: Իրոք, մեր երկիրը դեռ երբեք չէր ունեցել տնտեսական ու գիտատեխնիկական այնպիսի հզոր պոտենցիալ, տնտեսական շինարարության այնպիսի վիթխարի փորձ, որակյալ կադրերի բազմամիլիոն այնպիսի բանակ, ինչպես ներկայումս: Այդ ամենն անվանելով թանկագին կապիտալ, որը հերոսական ջանքերով, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, ստեղծել է



սովետական ժողովուրդը, ընկեր Լ. Ի. Բրեժնևը XXV համագումարի ամբիոնից կոչ արեց՝ ավելի լրիվ օգտագործել այդ նոր, հսկայական հնարավորությունները, որոնք թույլ են տալիս երկրի առջև դնելու իրենց ծավալով ու բարդությամբ աննախադեպ խնդիրներ: «Այն պլանները, որոնց հավանություն տվեց համագումարը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը XXV համագումարի փակման ժամանակ,— ոչ դյուրին, լարված պլաններ են: Այն խնդիրները, որ նա առաջադրեց, շատ լուրջ խնդիրներ են: Բայց մենք վստահ ենք, ընկերներ, մենք հաստատ համոզված ենք, որ այդ պլանները կկենսագործվեն, այդ խնդիրները կլուծվեն: Չէ՞ որ դրանց նպատակն է ապահովել մեր սոցիալիստական հայրենիքի հետագա ծաղկումը, սովետական մարդկանց խաղաղ ու երջանիկ կյանքը»:

Այս վեհասքանչ պլանների հաջող կենսագործումը, մեր երկրի էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացումն անմիջականորեն կախված են կուսակցական կազմակերպությունների կազմակերպական ու քաղաքական դաստիարակչական աշխատանքից: Ուստի բնական է, որ ՍՄԿԿ XXV համագումարը համակողմանիորեն քննարկեց կուսակցության՝ որպես սոցիալիստական հասարակարգի կազմակերպող ու ղեկավարող ուժի, դերի բարձրացման հարցերը: Համագումարը սահմանեց կուսակցության շարքերի և դրանց որակական կազմի հետագա ամրապնդման, էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման նկատմամբ կուսակցական ղեկավարության ուժեղացման ուղիները: Համագումարը պահանջեց՝ լենինյան նորմերի ու սկզբունքների խստագույն պահպանման, ներկուսակցական դեմոկրատիայի ծավալման, կոմունիստների նկատմամբ պահանջկոտության բարձրացման հիման վրա է՛լ ավելի զարգացնել ու ամրապնդել լենինյան կուսակցությունը: Համագումարը պահանջեց հասնել այն բանին, որպեսզի կուսակցության բոլոր օղակներն աշխատեն ներդաշնակ ու նպատակասլաց, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ համակվի բարձր գաղափարայնությամբ, լինի կոմունիզմի կառուցման ակտիվ առաջամարտիկ:

Կուսակցության ղեկավարման մակարդակը, ՍՄԿԿ XXV համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, անմիջականորեն կախված է այն բանից, թե որքան մարտունակորեն և ձեռներեցությամբ են աշխատում սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք կազմում են մեր կուսակցության հիմքը: Դրանք գտնվում են տնտեսական ու կուլտուրական շինարարության առաջավոր գծում, գործում ժողովրդի բուն խորքում և իրենց ողջ աշխատանքով ակտիվորեն նպաստում կուսակցության քաղաքականության միահյուսմանը մասսաների կենդանի ստեղծագործության հետ, տնտեսական-քաղաքական և գաղափարա-դաստիարակչական խնդիրների հաջող լուծմանը:

Ղեկավարվելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով, ՀԿԿ Կենտկոմը մի շարք միջոցառումներ է մշակել սկզբնական կուսկազմակերպությունների հետագա ամրապնդման, տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների լուծման գործում դրանց դերի ու պատասխանատվության բարձրացման համար: ՀԿԿ Կենտկոմը կուսակցական քաղկոմներին ու շրջկոմներին պարտավորեցրել է՝ առավել կատարելագործել կուսակցական կազմակերպությունների կազմակերպական կառուցվածքը, արտադրական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրատեղամասերում ճիշտ տեղաբաշխել կոմունիստների ուժերը:

Հանրապետության կուսկազմակերպությունների մարտունակության ու նախաձեռնության բարձրացման գործում վերջին շրջանում դրական լուրջ տեղաշարժեր են կատարվել: Սկզբնական կուսկազմակերպություններն առավել ակտիվորեն են ներգործում արտադրության արդյունավետության, գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա, մշտապես ջանում են, որ իրենց կոլեկտիվներում իշխի համերաշխ աշխատանքի ու ստեղծագործական որոնումների մթնոլորտ, հետևողականորեն զբաղվում են մարդկանց կոմունիստական դաստիարակության, նրանց աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման հարցերով:

Կուսակցության այս պահանջների ոգով են աշխատում հանրապետության սկզբնական շատ կուսկազմակերպություններ: Բերենք մեկ օրինակ:

Սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու, արտադրական կոլեկտիվների ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու, բոլոր կոմունիստների ու կոմերիտականների ավանգարդային դերն արտադրության մեջ ապահովելու շնորհիվ, լուրջ հաջողություններ է ձեռք բերել Երևանի ալյումինի գործարանի կոլեկտիվը։ Այս տարվա առաջին եռամսյակի պլանը կատարվել է 104, արտադրանքի իրացման պլանը՝ 105,1, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը՝ 104 տոկոսով։ Ձեռնարկությունն անցյալ հնգամյակում թողարկել է հազարավոր տոննաներով արտապլանային արտադրանք, տնտեսել միլիոնավոր կվ. ժամ էլեկտրաէներգիա, գործարանի կոլեկտիվը 16 անգամ հաղթող է ճանաչվել սոցիալիստական մրցության մեջ։

Նման փաստեր կարելի է շատ բերել, սակայն, դրականի հետ մեկտեղ, սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքում դեռևս կան շատ թերություններ։ Սկզբնական կուսկազմակերպությունների նկատմամբ մի շարք կուսշրջկոմների (Գորիսի, Եղեգնաձորի, Իջևանի, Կամոյի, Աշտարակի, Ապարանի) ղեկավարության ոճն ու մեթոդները դեռևս չեն համապատասխանում ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներին։ Կուսշրջկոմները տարբերակված մոտեցում չեն ցուցաբերում սկզբնական կուսկազմակերպությունների նկատմամբ, լիովին հաշվի չեն առնում դրանց աշխատանքի պայմանները, նրանց առջև ծառացած խնդիրները։

Կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները պետք է արմատապես վերանայեն սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարման ոճն ու մեթոդները, ավելի խոր թափանցեն նրանց գործունեության մեջ։ Իսկ սկզբնական կուսկազմակերպությունները, շարունակ կատարելագործելով իրենց կազմակերպական ու քաղաքական աշխատանքը, կոչված են ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, աշխատավորներին մոբիլիզացնել հաջողությամբ կատարելու արտադրական յուրաքանչյուր ձեռնարկության հնգամյա պլանը, իրենց կոլեկտիվների անդամներին համակել բարձր գաղափարայնությամբ, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՈՒ ՈՐԱԿԻ հնգամյակ է։ Դա նշանակում է, որ սովետական յուրաքանչյուր մարդ, յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվ պետք է պայքարի նվազագույն ծախսումներով մեծ արդյունքների հասնելու համար, խնայողաբար ու արդյունավետ օգտագործի մեքենաներն ու սարքավորումները, նյութական ու ֆինանսական միջոցները, հումքը, վառելիքն ու էլեկտրաէներգիան։ Դա նշանակում է, որ յուրաքանչյուր աշխատող պետք է ձգտի բարձրացնելու իր ձեռնարկության գործունեության որակական ցուցանիշները, իր սեփական աշխատանքի որակը, արդյունավետ ծախսի աշխատաժամանակը։

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների անշեղ կատարումը, մեր երկրի առաջընթացն անխզելիորեն կախված են յուրաքանչյուր կոմունիստի, սովետական ամեն մի քաղաքացու լավ ու ջանասեր աշխատանքից։ Եթե որևէ կոլեկտիվում կան անբաններ, գործալիքներ, աշխատաժամանակը անտեղի վատնողներ, իրենց գործի ոչ գիտակներ, ապա, որպես կանոն, այդտեղ գործերը բարեհաջող չեն։ Այստեղ է, ահա, որ կոլեկտիվը, կուսակցական կազմակերպությունների գլխավորությամբ, պետք է ասի իր վճռական ու ազդու խոսքը, դաստիարակի նմաններին, այնպես անի, որ կոլեկտիվում բոլորը լինեն հասարակության, ժողովրդի շահերի համար պայքարող ակտիվ մարտիկներ։ «Հստակորեն կենսագործել կուսակցության դիրեկտիվները,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— անկյունաքարը դարձնել հասարակության, պետության, ժողովրդի շահերը՝ այսպես և միայն այսպես պետք է աշխատի յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր ոք, ով սրտանց շահագրգռված է մեր ընդհանուր գործով»։

Մեր ընդհանուր գործի հաջողությունը մեծապես կախված է կադրային ճիշտ քաղաքականությունից։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, դա այն հզոր լծակն է, որով կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում ծագած հրատապ և կարևորագույն խնդիրների, ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի լուծման համար մղվող պայքարում մեր երկրում դաստիարակվել ու կոփվել են մեծ թվով որակյալ կադրեր, որոնք ունակ են իրականացնելու կոմունիստական շինարարության վեհ ու պատվաբեր գործը։



Կուսակցությունը ժամանակակից ղեկավարից պահանջում է կուսակցականությունը օրգանապես զուգորդել խոր բանիմացության, կարգապահությունը՝ նախաձեռնության և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ։ Ղեկավարը պարտավոր է ամեն պարագայում հաշվի առնել սոցիալ-քաղաքական, դաստիարակչական կողմերը, զգայուն լինել մարդկանց, նրանց կարիքների ու պահանջմունքների նկատմամբ, օրինակ ծառայել աշխատանքում և կենցաղում։

Կուսակցությունը սրտացավ, հոգատար վերաբերմունք է ցուցաբերում կադրերի նկատմամբ։ Բայց նման վերաբերմունքը, ՍՄԿԿ XXV համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, ամենևին չի նշանակում, թե կադրերն ամրապնդելու պատրվակով կարելի է ղեկավար պոստերում թողնել նրանց, ովքեր վատ են կատարում իրենց պարտականությունները, հանդես են բերում անպատասխանատվություն, ապրում գիտելիքների հին պաշարով, կտրվել են կյանքից, կորցրել կոմունիստների վստահությունը։

Ղեկավարվելով կուսակցության ցուցումներով, ՀԿԿ Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները շարունակ իրենց տեսադաշտում են պահում կադրային քաղաքականությունը։ Այս հարցին հատկապես լուրջ ուշադրություն հատկացրեց ՀԿԿ XXVI համագումարը։ Նշելով, որ կուսակցական օրգանների գործունեության մեջ կադրերի հետ տարվող աշխատանքում եղած սխալները բարենպաստ պայմաններ էին ստեղծել առանձին մարդկանց կողմից պաշտոնական դիրքի զանազան չարաշահումների, աչքակապության, օրինականության խախտումների համար, համագումարը ՀԿԿ Կենտկոմից, կուսակցության քաղկոմներից ու շրջկոմներից պահանջեց՝ կադրային քաղաքականության մեջ խստորեն ղեկավարվել լենինյան սկզբունքներով, կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը կատարել միմիայն նրանց գործարար ու քաղաքական հատկանիշների հիման վրա, բարձրացնել նրանց անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։

Հետևողականորեն իրականացնելով այս պահանջները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները հանրապետության տնտեսական ու կուլտուրական շինարարության տարբեր տեղամասերն ամրապնդում են բանիմաց ու գործունյա կադրերով։

Միաժամանակ, ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, կենսագործելով ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.), Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի որոշումները, կտրուկ և խիստ միջոցներ են ձեռնարկում այն մարդկանց նկատմամբ, ովքեր խախտել են կուսակցական և պետական կարգապահությունը, ձախողել իրենց վստահված գործը։

Այսպես, օրինակ, վերջերս ՀԿԿ Կենտկոմի բյուրոն քննության առավ ՀՍՍՀ Մինիստրների սովետի նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչությունում և Հայկական ՍՍՀ առևտրի մինիստրության «Հայբակալեա» հանրապետական գրասենյակում ֆոնդային և պետական կարգապահության կոպիտ խախտման փաստերը և խիստ տուժարկեց այդ հիմնարկությունների մի քանի ղեկավար աշխատողների։

Կուսակցական կազմակերպական աշխատանքի կարևորագույն մասն ընդունված որոշումների կատարման վերահսկողությունն ու ստուգումն է։ Դա, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, կուսակցական, սովետական ու տնտեսական յուրաքանչյուր ղեկավարի, յուրաքանչյուր կուսակցական մարմնի, սկզբնական կուսկազմակերպության գործն է։

Որոշումների կատարման ստուգման ասպարեզում մեծ դեր է պատկանում ժողովրդական վերահսկողության մարմիններին։ Կուսկազմակերպությունները

պետք է լիովին օգտագործեն դրանց հնարավորությունները, ամեն կերպ աջակցեն ու նպաստեն նրանց գործունեությանը:

ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Լատվիական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության օրգանների նկատմամբ կուսակցական ղեկավարության մասին» հայտնի որոշումից հետո, որի դրույթներն ու եզրակացությունները լիովին վերաբերում են նաև մեր հանրապետությանը, կուսկազմակերպությունները, տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում կատարման ստուգումը ուժեղացնելու համար, սկսեցին առավել լայնորեն օգտագործել ժողովրդական վերահսկողության մարմինների հնարավորությունները:

Սակայն, հարկ է նշել, որ որոշումների կատարման վերահսկողության և ստուգման գործն ամենուրեք չէ, որ բարենպաստ է: Հաճախ որոշումները լրիվ չեն կատարվում կամ չլուծված նույն հարցերի վերաբերյալ ընդունվում են կրկնակի ու լրացուցիչ որոշումներ: Նման փաստերը վկայում են, որ մի շարք կուսկազմակերպություններում դեռևս վատ հիմքերի վրա է դրված կատարման ստուգումը:

Անհրաժեշտ է, որ սկզբնական կուսկազմակերպությունները, քաղկոմներն ու շրջկոմները արմատապես շտկեն այդ ասպարեզում եղած թերությունները, կատարման վերահսկողության և ստուգման գործը լիովին համապատասխանեցնեն կուսակցության առաջադրած արդի պահանջների մակարդակին:

ՄԵՐ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, պատմական հարուստ փորձով իմաստնացած, վստահորեն ու լավատեսությամբ թևակոխել է իր հեղափոխական, վերափոխիչ գործունեության նոր փուլը: Նրա նոր, հոյակապ կանխագծումները արժանացել են սովետական ողջ ժողովրդի միահամուռ հավանությանը և ջերմ պաշտպանությանը: Կուսակցական կազմակերպությունների, բոլոր կոմունիստների առաջնահերթ խնդիրն է՝ հմտորեն գլխավորել աշխատավորական լայն մասսաների աշխատանքային ու քաղաքական մեծ վերելքը, որն առաջացրել է կուսակցության համագումարը: Այդ պատասխանատու խնդիրը նրանք կարող են հաջողությամբ լուծել միայն այն դեպքում, եթե հիմնավորապես ու լրջորեն ուսումնասիրեն ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման համակողմանի ու խոր ուսումնասիրությունը կոմունիստների ու անկուսակցական ակտիվի մարքս-լենինյան կրթության, բոլոր աշխատավորների քաղաքական դաստիարակության անբաժանելի մասն է:

Սովետական բոլոր մարդիկ, այդ թվում և մեր հանրապետության աշխատավորները, հարազատ կուսակցության պլանների կատարումը համարում են իրենց կենսական գործը և ոգեշունչ աշխատանքով նորանոր սխրանքներ են գործում կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐԴԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՆ

Դ. Մ. ԳՎԻՇԻԱՆԻ

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող պատմական մրցության գլխավոր ուղղություններից մեկն է, որն արտահայտվում է այդ հեղափոխության հետ կապված պրոբլեմների շուրջ գաղափարախոսական պայքարի ուժեղացման մեջ:

Ժամանակակից բուրժուական սոցիոլոգիայի ուշադրության կենտրոնում են գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական ասպեկտները: Ընդսմին, բուրժուական սոցիոլոգների գաղափարական ելակետային առաջադրույթի մետաֆիզիկականությունը դրսևորվում է նրանց տեսակետների յուրատեսակ բևեռացման մեջ. առաջադրվում են այնպիսի տեսություններ, որոնք կամ ֆետիշացնում են գիտատեխնիկական հեղափոխության այս կամ այն սոցիալական դրսևորումը, կամ ժխտում նրա պրոգրեսիվ դերը մարդկային հասարակության բախտի համար:

Ինչո՞վ է բացատրվում բուրժուական սոցիոլոգիայի մեծ հետաքրքրությունը գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական պրոբլեմների նկատմամբ: Ամենից առաջ այն բանով, որ գիտության ու տեխնիկայի մեջ ներկայումս տեղի ունեցող հեղաշրջումը տնտեսական և սոցիալական առաջընթացի նյութական հիմքի՝ արտադրաուժերի զարգացումը արագացնելու հզոր գործոն է: Այստեղից էլ բուրժուական սոցիոլոգների ձգտումը՝ իրենց հայացքների սիստեմը հարմարեցնելու այն փոփոխություններին, որ իր հետ բերում է գիտատեխնիկական հեղափոխությունը՝ արտադրաուժերի այդ արմատական, որակական վերափոխումը՝ գիտությունը հանրային արտադրության զարգացման առաջատար գործոն դարձնելու հիման վրա: Գիտատեխնիկական հեղափոխությունը փոխում է հանրային արտադրության դեմքը, աշխատանքի պայմանները, բնույթն ու բովանդակությունը, հանգեցնում է դրա արտադրողականության արագ աճին, ներգործում է մարդկանց գաղափարախոսության, կուլտուրայի, կենցաղի ու հոգեբանության վրա: Գիտատեխնիկական հեղափոխության ընթացքի սոցիալական որոշ հետևանքներն ու պայմանները միակողմանիորեն ցուցադրելու վրա են հիմնված տարբեր տեսակի տեխնոկրատական ու սցիենտիստական տեսությունները:

Մյուս կողմից, կապիտալիզմի օրոք գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները մարդուն չեն ազատագրում ճնշումից, շահագործումից և անհավասարությունից, այլ ավելի են ուժեղացնում մոնոպոլիստական կապիտալի իշ-

Տպագրվում է աննշան համառոտումներով:

և նախահեղափոխական հասարակությունը» զեկուցման մեջ։ Նրա կարծիքով, գիտատեխնիկական առաջընթացի պրոբլեմների նկատմամբ ամենից ավելի հարմար մոտեցումը պետք է լինի, այսպես կոչված, «քննադատական տեսությունը»։ «Այն ուղղված է սոցիալական կարգի գոյություն ունեցող բոլոր տիպերի փոփոխմանը, քանի որ նրանցից ոչ մեկը չի համապատասխանում իսկական մարդկային հասարակությանը» (տե՛ս Материалы III международной конференции по социальному прогнозированию. Бухарест, 1972)։

Քննադատելով Դ. Բելլին, Վան Ստինբերգենը «նոր էլիտայի» նրա կոնցեպցիային հակադրում է տեխնիկական և պրոֆեսիոնալ ինտելիգենցիայի՝ որպես «հեղափոխական նոր դասակարգի», իր կոնցեպցիան։ Ստինբերգենը դրա համար որպես հիմք է համարում այն, որ վերջին ժամանակներս երևան են եկել, այսպես կոչված, «քննադատաբար տրամադրված մասնագետների» կատեգորիաներ, որոնք «չեն ցանկանում աշխատել բիզնեսում»։ Մի «նոր ձախի» կոնցեպցիան ևս ոչինչ չի ավելացնում նշված պրոբլեմների լուծմանը։ Սակայն այդ փորձը հետաքրքրական է այն բանով, որ նրա մեջ արտացոլվում է հասարակական կյանքի միանգամայն ռեալ, հակասական տարրը կապիտալիստական հասարակության պայմաններում, արտացոլվում է այն փաստը, որ սոցիալական ճնշման սիստեմը իրոք օգտագործում է գիտատեխնիկական հեղափոխության արդյունքը հանդիսացող միջոցները։

«Ռացիոնալիզմը» վկայում է, որ բուրժուական սոցիոլոգիան անկարող է և չի ցանկանում հասկանալ հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, որոնք պայմանավորում են կապիտալիզմի պատմական անհեռանկարայնությունը։ Անխզելիորեն կապված լինելով կապիտալիստական կարգի հետ, բուրժուական գաղափարախոսները փորձում են նրա անխուսափելի կործանումը նույնացնել ողջ մարդկային քաղաքակրթության գոյության սպառնալիքի հետ։ Գիտատեխնիկական հեղափոխությունը, որը հանդես է գալիս որպես սոցիալ-տնտեսական առաջընթացի հզոր միջոց, նրանք ներկայացնում են իբրև մի միստիկական ուժ, որը որոշում է ժամանակակից հասարակության բախտը։ Դրա հետ մեկտեղ, բուրժուական սոցիոլոգների պեսիմիստական կոնցեպցիաները միանգամայն որոշակի ծառայողական դեր են կատարում։ Դրանց նպատակն է աշխատավոր զանգվածներին շեղել մոնոպոլիստական կապիտալի դեմ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար նրանց մղած պայքարից։

ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՅԻ ՍԻՐԱԾ ՀՆԱՐՔՆԵՐԻՑ մեկը գիտատեխնիկական հեղափոխության հետ կապված պրոցեսների հասարակական, համապարփակ բնույթի օգտագործումն է սոցիալիզմի և կապիտալիզմի կոնվերգենցիայի ամեն կարգի տեսությունները հիմնավորելու համար։ Այդ տեսությունների հիմքում ընկած է սոցիալ-տնտեսական երկու սիստեմներում գիտատեխնիկական զարգացման էության մեջ եղած սկզբունքային տարբերությունների ժխտումը։

Ի տարբերություն կապիտալի երկրների, սոցիալիզմի օրոք գիտատեխնիկական հեղափոխության հետ կապված լայն շրջանի պրոբլեմները իսկական գիտական լուծում են ստանում գիտության ու տեխնիկայի նվաճումները սոցիալիստական հասարակական սիստեմի առավելությունների հետ օրգանապես միացնելու ընթացքում. գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օգտագործվում են հասարակության բարօրության համար, և սոցիալ-տնտեսական, տեխնիկական, աշխարհայացքային պրոբլեմների լուծումը ենթարկված է կոմունիստական հասարակարգ կառուցելու, բոլոր աշխատավորների նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարման խնդիրներին։

Գիտատեխնիկական հեղափոխությունը պատմականորեն զուգադիպել է այն շրջանին, երբ մեր երկիրը թևակոխել է զարգացած, հասուն սոցիալիզմի փուլը։ Այդ փուլի ուշագրավ գծերից մեկն է անցումը էկոնոմիկայի աճման ինտենսիվ ուղուն, արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումը՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացման հիման վրա։ Դա կանխորոշում է գիտատեխնիկական հեղափոխության հետագա ծավալման, նրա



նվաճումները կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար օգտագործելու կարևորագույն նշանակությունը։ «Գիտատեխնիկական հեղափոխության, գիտության ու տեխնիկայի արագ զարգացման արմատական հարցերը,— մատնանշում էր Լ. Ի. Բրեժնևը,— այսուհետև ևս կլինեն կուսակցության և կառավարության ուշադրության կենտրոնում։ Դա մեր տնտեսական ստրատեգիայի կարևորագույն խնդիրն է... երկրի զարգացման տեսանելի ողջ ժամանակաշրջանի համար» (Բրեժնև Լ. Ի., Լենինյան կուրսով, հ. 2, էջ 706)։ Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը և տնտեսավարության մեխանիզմի կատարելագործումը, ընդգծված էր ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թվականի դեկտեմբերյան պլենումում, այն երկու գլխավոր լծակներն են, որոնցից բռնելով կարելի է մեր ողջ տնտեսական շինարարությունը բարձրացնել նոր աստիճանի։

Գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ օրգանապես միացնելու անհրաժեշտության մասին մեր կուսակցության արած հետևության տեսական ու քաղաքական կարևորագույն նշանակությունն այն է, որ դա հանդիսացավ արդի ժամանակաշրջանում հասարակական զարգացման օրենքների իմացության արդյունքը։ Այդ հետևությունը նշանակություն ունի ինչպես մեր երկրում կոմունիստական շինարարության, այնպես էլ համաշխարհային հեղափոխական պրոցեսի համար, ցույց տալով հաղթանակի հասնելու ուղին՝ սոցիալիզմի և կապիտալիզմի համաշխարհային-պատմական հակամարտության մեջ։

ՍՍՀՄ-ի և սոցիալիզմի երկրների հաջողությունները, կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի գերազանցությունը կապիտալիստականի նկատմամբ այժմ չեն կարող անտեսել անգամ բուրժուական սոցիալ-քաղաքական մտքի ներկայացուցիչները։ Այն գաղափարը, թե իբր ՍՍՀՄ-ը պարտության է դատապարտված ԱՄՆ-ի հետ տնտեսական մրցության մեջ, նշում է ամերիկացի հայտնի տնտեսագետ Ջ. Գելբրեյթը, «կրախի է մատնվել և այժմ դժվար է հիշել, որ մենք մի ժամանակ հավատացել ենք այդ անհեթեթությանը» Galbraith J. K. The Affluent Society. L., 1969, p. 313):

Բայց սոցիալիզմի՝ որպես որոշակի սոցիալ-տնտեսական հասարակարգի, հաջողությունների ընդունումը ամերիկացի տնտեսագետի ընդհանուր սոցիալ-տնտեսական կոնցեպցիայի նախապայմանն է միայն։ Խոսելով սոցիալիզմի մասին, նա միաժամանակ խոսում է նաև կապիտալիզմի մասին, սոցիալիզմը և կապիտալիզմը դիտում է որպես «միասնական ինդուստրիալ հասարակության» երկու տարատեսակներ, որոնք ունեն կոնվերգենցիայի տենդենց, «որքան էլ տարբեր լինեն նրանց ազգային և գաղափարախոսական հավակնությունները» (Гэлбрейт Дж., Новое индустриальное общество. М., 1969, стр. 452)։ Երկու պետությունների՝ ԱՄՆ-ի և ՍՍՀՄ-ի համար, ըստ Ջ. Գելբրեյթի, բնորոշ է պլանային տնտեսությունը, որը որոշում է էկոնոմիկայի ընդհանուր վիճակը։

«Սովետական տիպի տնտեսական սիստեմներում,— գրում է նա,— վերահսկողությունը գների նկատմամբ (այսինքն՝ պլանավորումը) պետության ֆունկցիան է։ ԱՄՆ-ում սպառողական պահանջարկի այդ կառավարումը ավելի պակաս ձևական եղանակով իրականացվում է կորպորացիաների, նրանց ռեկլամային բաժինների, վաճառքի գործակալների, մեծածախ ու մանրածախ առևտրականների կողմից։ Բայց տարբերությունը, հավանաբար, ավելի շուտ կիրառվող մեթոդների, քան հետապնդվող նպատակի մեջ է» (Նույն տեղը, էջ 453)։

1973 թվականին հրատարակված էկոնոմիկան և հասարակական նպատակը աշխատությունը և 1975 թվականին Մոսկվայում կարդացված զեկուցումները ցույց են տալիս, որ Ջ. Գելբրեյթը այժմ էլ «կոնվերգենցիայի» տեսության ակտիվ կողմնակից է։ Սակայն, եթե նրա վաղ շրջանի աշխատություններում ընդգծվում էր սոցիալիզմի երկրների որոշ արտադրական կազմակերպությունների նմանությունը կապիտալիստական արտադրության հետ, ապա ներկայումս Ջ. Գելբրեյթը պնդում է, որ ամերիկյան ինդուստրիայի մեջ «սոցիալիզմը

արդեն գոյություն ունի» և որ «սոցիալիզմ բառը այլևս չի կարող արգելված բառ լինել» (Galbraith J. K. Economics and the Public Purpose. Boston, 1973, p. 285):

Ջ. Գելբրեյթը նույնիսկ փորձում է ժամանակակից կապիտալիստական խոշոր արտադրության տեխնոբյուրոկրատական կառավարման երևույթները ցույց տալու համար մտցնել «սոցիալիզմ» տերմինի պրագմատիկական օգտագործում: Ջ. Գելբրեյթի պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի նուրբ ջատագովությունը ենթադրում է նաև արդի աշխարհում ուժերի ռեալ հարաբերակցության նկատմամբ եղած հայացքների նկատելի փոփոխություններ: Ջ. Գելբրեյթը իր հայացքներում անցել է մեծ ուղի՝ «սառը պատերազմի» պաշտպանությունից մինչև միջազգային համագործակցության կոչը՝ հանուն հետագա առաջընթացի: Ջ. Գելբրեյթի կարծիքով, արդի պայմաններում գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների հաջող արմատավորումը կյանքում կարող է ապահովվել ուրիշ երկրների, և ամենից առաջ Միացյալ Նահանգների ու Սովետական Միության հետ համագործակցության պայմանով միայն (նույն տեղը, էջ 153):

Բուրժուական տեսաբանի հայացքների նման էվոլյուցիան տիպական է ժամանակակից բուրժուական հասարակական գիտության շատ ներկայացուցիչների համար: Դա բացատրվում է նրանով, որ մեր ժամանակներում միջազգային գիտատեխնիկական և տնտեսական կապերը սկսել են դառնալ միջազգային հարաբերությունների ողջ կոմպլեքսի բաղկացուցիչ մասերից մեկը:

Համագործակցության զարգացումը արտացոլում է ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության օբյեկտիվ պահանջները և դառնում է նյութական ու մարդկային մեծ ռեսուրսներ պահանջող հետազոտությունների կազմակերպման առավել նպատակահարմար ձևը: Տվյալ դեպքում խոսքը երկու տարբեր սոցիալ-տնտեսական սիստեմների համագործակցության, այլ ոչ թե նրանց կոնվերգենցիայի մասին է:

Միջազգային լարվածության մեղմացման պայմաններում կարևորագույն նշանակություն տալով զարգացած կապիտալիստական երկրների հետ տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական կապերի զարգացմանը, ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը ելնում են այն բանից, որ այդ ոլորտում ևս անխուսափելիորեն ամենասուր գաղափարական պայքար է մղվում: Այդ են վկայում ինչպես մեղմացման հակառակորդների չդադարող նկրտումները՝ աշխարհը վերադարձնել «սառը պատերազմի» ժամանակներին, այնպես էլ իմպերիալիզմի մոլեռանդ պաշտպանների գաղափարախոսական դիվերսիաների փորձերը համաշխարհային կոմունիստական շարժման, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի դեմ, խաղաղության ուժերի գլխավոր պատվարի՝ Սովետական Միության գլխավորած սոցիալիստական համագործակցության դեմ նրանց գրոհներում:

ԱՐԴԻ ԷՏԱՊՈՒՄ ԱՆՀՐԱԺԵՇՏ Է Է՛Լ ԱՎԵԼԻ ՎՃՌԱԿԱՆ պայքար գիտատեխնիկական հեղափոխության բուրժուական սոցիոլոգիական կոնցեպցիաների դեմ: Այդ բոլոր կոնցեպցիաներին հատուկ է այն միակ ճիշտ ուղու ժխտումը, որը, ինչպես ցույց է տալիս մարքս-լենինյան կուսակցությունների փորձը, անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին: Մարդկային ուժերի ու հնարավորությունների, ստեղծագործական ընդունակությունների ու մտքի նվաճումները կապիտալիզմի պայմաններում միջոց են դարձել պահպանելու և մեծացնելու կապիտալի արժեքը, որի սահմաններն իսկ պատմականորեն սահմանափակ են: Սոցիալիզմի պայմաններում է միայն իրականացվում մարդու առաջանցիկ զարգացման կենսականորեն կարևոր սկզբունքը նրա ստեղծագործությունների ոլորտի համեմատությամբ, ռեալ իմաստ է ստանում և իրականություն դառնում մարդու՝ որպես ինքնանպատակի զարգացման՝ մարքսիզմ-լենինիզմի կողմից հիմնավորված գաղափարը:

«Социологические исследования», № 1, 1976.

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՆՈՐ ՓՈՒԼԸ

**Վ. Ի. ՂԱԶԱՆՋՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու
**Գ. Ա. ԽՈՐԱՍԱՆՅԱՆ**
Տեխնիկական գիտությունների թեկնածու

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ նպատակամղված է տնտեսական կարևորագույն խնդրի լուծմանը՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցմանը: Իններորդ հնգամյակում, ինչպես ասել է Լ. Ի. Բրեժնևը, նոր առաջընթաց քայլ է արված այդ ասպարեզում: Սովետական Միությունը աշխարհում արդեն գրավում է առաջին տեղը ո՛չ միայն քարածխի, երկաթահանքի, ցեմենտի և այլ նյութերի, այլև պողպատի, նավթի, հանքային պարարտանյութերի արտադրությամբ:

Բարձր և կայուն տեմպերով է զարգանում նաև Հայկական ՍՍՀ-ի ժողովրդական տնտեսությունը: Միայն վերջին երեք հնգամյակներում արդյունաբերական արտադրությունն աճել է գրեթե 6 անգամ: 1976 թ. մեկ շաբաթում հանրապետությունում կթողարկվի նույնքան արդյունաբերական արտադրանք, որքան ամբողջ 1946 թվականին:

Տասներորդ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի թողարկումը Սովետական Միությունում կաճի 35—39 տոկոսով, հիմնական արտադրաֆոնդերը կավելանան 40 տոկոսով: Կշարունակվի գյուղատնտեսության զարգացման ու նրա ինտենսիվացման երկարաժամկետ ծրագրի կենսագործումը: Մեր հանրապետության արդյունաբերական արտադրանքը կաճի 43—47 տոկոսով, իսկ գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը կավելանա 22—25 տոկոսով:

Արտադրության մասշտաբներն այժմ այնքան մեծ են, որ, չնայած աշխատանքի արտադրողականության անշեղ աճին, միութենական հանրապետությունների մեծ մասում աշխատուժի պակաս է զգացվում: Գյուղատնտեսությունը վաղուց է դադարել աշխատուժի «անսպառ» աղբյուր լինելուց: Այժմ այն բարձրորակ մեխանիզատորների, անասնապահների և այլ մասնագետների ներհոսի կարիք ունի: Նույն վիճակում է նաև ոչ-նյութական արտադրությունը՝ սպասարկման ոլորտը: Դա մեր արդի զարգացման բնորոշ գծերից մեկն է:

Աշխատանքի արտադրողականության աճը դառնում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ամենաառաջին պայմանը: Անցած հնգամյակում Սովետական Միության ազգային եկամտի աճի չորս-հինգերորդը ստացվել էր արտադրողականության բարձրացման հաշվին: Չնայած դրան, դեռևս չափազանց շատ են աշխատանքի արտադրողականության աճի չօգտագործված ռեզերվները:

Այժմ չի կարելի պարզապես արտադրել, աշխատուժը պարզապես միացնել արտադրության որոշակի միջոցներին: Այժմ պահանջվում է արտադրապրոցեսների և արագ զարգացող գիտության անմիջական կապ: Ներկայումս աշ-

խարհում, յուրաքանչյուր տասը տարում, պոզիտիվ գիտելիքների ֆոնդը կրկնապատկվում է։ Միայն անցած հնգամյակում մեր հանրապետությունում կազմակերպվել է գիտահետազոտական 13 հաստատություն, որոնց անունների թվարկումն արդեն շատ բան է ասում՝ մաթեմատիկայի, մեխանիկայի, քիմիական ֆիզիկայի, ռադիոֆիզիկական չափումների... Ընթացիկ հնգամյակում Հայաստանի գիտական հաստատությունները պետք է մշակեն 105 կարևորագույն պրոբլեմներ։ Անմիջական արտադրական բնույթ են ստանում մաթեմատիկայի, քվանտային ռադիո-ֆիզիկայի, տեսական ու կիրառական մեխանիկայի, կարծր մարմինների ֆիզիկայի, կենսաբանության, միկրոբիոլոգիայի, նուրբ օրգանական քիմիայի և հիմնարար այլ գիտությունների բնագավառում տարվող հետազոտությունները, էլ չենք խոսում կիրառական պրոֆիլի հետազոտությունների մասին։

Կենդանի աշխատանքի արտադրողականության բարձրացումը դառնում է արտադրության հետագա աճի կարևորագույն պայման։ Տասներորդ հնգամյակում նախատեսված աշխատանքի արտադրողականության 27 տոկոս աճը հավասարազոր է մոտ 26 մլն մարդու աշխատանքի խնայողությանը։ Սակայն բավական չէ միայն կրճատել կենդանի աշխատանքն ու բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Աշխատաժամանակի խնայողությունը դրանով չի սահմանափակվում. անհրաժեշտ է խնայել նաև կատարված, արդեն առարկայացված աշխատանքը։ Հարկավոր է ո՛չ թե պարզապես շատ արտադրանք տալ, այլ այդ նույն արտադրանքն ստանալ համեմատաբար ավելի քիչ քանակի հումքից, նյութերից ու էներգիայից։ Դա հրամայական պահանջ է դառնում մանավանդ մեր օրերում, երբ բնական ռեսուրսների սպառումը վիթխարի չափով ինտենսիվացել է, և դրանց օգտագործման տեմպերը շարունակում են աճել։ Մինչդեռ նյութական ռեսուրսներն անսպառ չեն։ Դրանից էլ բխում է գիտության հսկայական նշանակությունը, մասնավորապես էներգիայի նոր աղբյուրների որոնման գործում, ինչպիսիք են՝ կարգավորվող ջերմամիջուկային, արևի, հակագրավիտացիոն էներգիան և այլն։ Այստեղից էլ՝ կատարված աշխատանքի նյութական ծախսումների խնայողության հսկայական նշանակությունը։

Ինչպես ամբողջ երկրում, Հայկական ՍՍՀ-ում ևս պլանով որոշակի առաջադրանքներ են սահմանվել հումքի, վառելանյութի և էլեկտրաէներգիայի տեսակարար ծախսումների կրճատման վերաբերյալ, որի շնորհիվ նյութական ծախսումների տեսակարար կշիռը արդյունաբերական համախառն արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ կիջնի 2,7 տոկոսով։

Աշխատանքի խնայողության հետ է ուղղակիորեն կապված և արտադրանքի որակի բարձրացումը։ Մեր հանրապետությունում նախատեսված է զգալիորեն ավելացնել պետական որականիշ ունեցող արտադրանքի թողարկումը, իսկ հնգամյակի վերջերին լիովին վերացնել որակի երկրորդ կատեգորիայի արտադրանքի թողարկումը։ Ձեռնարկություններում պետք է արմատավորել որակի կառավարման հատուկ սիստեմ՝ լայնորեն կիրառելով Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրատեխնիկական գործարանի, Լվովի մարզի և այլ վայրերի ձեռնարկությունների առաջավոր փորձը։

ԱՅՍՊԻՍՈՎ, ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱ-ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ կառուցումը պահանջում է արտադրության մեծ մասշտաբներ, որոնց կարելի է հասնել ո՛չ միայն կենդանի աշխատանքի խնայողությամբ, այլև հասարակական աշխատանքի բարելավմամբ, ուրեմն և կտրուկ որակական փոփոխման ենթարկելով հանրային արտադրության բուն պրոցեսը, արտադրության բուն տարրերը, այդ թվում և մարդուն, ինչպես և արտադրության արդյունքը։

Իններորդ հնգամյակում ձեռք բերված հաջողությունները կարող էին զգալիորեն ավելի մեծ լինել, եթե ավելի լավ կազմակերպվեր արտադրությունը և լիովին օգտագործվեին նրա ռեզերվները։

Օրինակ, ՍՍՀՄ-ում արդյունաբերության մեջ մեծ մասամբ ձեռքով կատարվող օժանդակ աշխատանքներով ավելի շատ մարդ է զբաղված, քան ԱՄՆ-ում։



Լինում են դեպքեր, երբ հիմնական արտադրության մեջ ներդրված լավ մեքենաներն իսկ իջեցնում են աշխատանքի արտադրողականությունը։ Դրա պատճառն այն է, որ հիմնական արտադրության ժամանակակից ավտոմատացված և կիսաավտոմատացված տեխնիկան հաճախ պահանջում է մի քանի անգամ ավելի շատ օժանդակ ձեռքի աշխատանք, քան կրճատում հիմնական աշխատանքը։ Մինչդեռ բանում է միայն հիմնական բանվորը։ Ուստի, օժանդակ արտադրամիավորի մեքենայացումը աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր ռեզերվ է. հայտնի է, որ օժանդակ ծառայության մեկ բանվորին ազատելու համար ծախսվում են 2—3 անգամ ավելի քիչ միջոցներ, քան հիմնական արտադրությունը մեկ բանվորով կրճատելու դեպքում։

Բազմաթիվ չօգտագործված ռեզերվներ կան հումքի և նյութերի ծախսման նորմայի իջեցման, թափոնների կրճատման, հարակից և երկրորդային հումքի լրիվ օգտագործման, կապիտալ շինարարության փոշիացման հաղթահարման, արտադրանքի որակի բարձրացման, խոտանի ու պարապուրդների վերացման և այլ ասպարեզներում։ Մեր հանրապետությունում, օրինակ, գունավոր մետալուրգիայի բնագավառում թափոնի մեջ է անցնում պղնձի, մոլիբդենի բավական բարձր տոկոս, լրիվ կորչում են այնպիսի արժեքավոր հազվագյուտ տարրեր, ինչպիսիք են՝ վանադիումը, սելենը, տելուրը և այլն. մեքենաշինության և թեթև արդյունաբերության ձեռնարկություններում բարձր են սարքավորման պարապուրդները և աշխատաժամանակի կորուստները, որոնք, երբեմն, մի քանի անգամ գերազանցում են նորմաները. արդյունաբերության համեմատաբար ոչ մեծ օբյեկտներ կառուցվում են 3—5 և ավելի տարում (թեև կարող են ավարտվել 1—2 տարում)։ Օրինակ, Ախուրյանի շրջանի երկաթբետոնե կոնստրուկցիաների, Վեդու և Թալինի դարբնոցային ավտոմատների գործարանները, Շինուհայրի ռետինե կոշկեղենի, Վարդենիսի ծխախոտի ֆերմենտացիոն ֆաբրիկաները, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանի ֆիլիալը և այլն։ Ձգձգվում է այնպիսի խոշոր օբյեկտների շինարարությունը, ինչպիսիք են Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատը, Ջոդի համալիրը, Արփա—Սևան թունելը և այլն։

Անցած տարիների դժվարությունները, ինչպես նշված է Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ, որոշ չափով անդրադարձան աճի տեմպերի վրա։ Սակայն արդյունաբերության աճի ընդհանուր տեմպերը լրիվ պատկերացում չեն տալիս իրական զարգացման բնույթի ու մասշտաբների մասին։ Իհարկե, արտադրածավալի աճը էկոնոմիկայի զարգացման պարտադիր բաղադրամասերից մեկն է։ Եվ, այնուամենայնիվ, «աճ» ու «զարգացում» տերմինները չի կարելի նույնացնել։ Արտադրածավալի աճը, առանց հաշվի առնելու արտադրության աշխատանքի ընթացքի որակը, հաշվեկշռումն ու ինտենսիվությունը, չի կարող լիովին բնութագրել զարգացումը։

«Մենք՝ կոմունիստներս,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— ելնում ենք այն բանից, որ միայն սոցիալիզմի պայմաններում է գիտատեխնիկական հեղաշրջումը ստանում ճիշտ, մարդու և հասարակության շահերին համապատասխանող ուղղություն» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 77)։

Տասներորդ հնգամյակի բնորոշ առանձնահատկություններից են գիտատեխնիկական հեղափոխության և արտադրության ինտենսիվացման պահանջներին համապատասխանող ավելի վճռական տեղաշարժերը՝ արդյունաբերական արտադրության կառուցվածքում։ Բավական է ասել, որ կառուցվածքային փոփոխությունների հաշվին ստացվող հանրային ամբողջական արդյունքի աճի բաժինը, մեր հաշվումներով, կկազմի ողջ աճի ոչ պակաս, քան 55—60 տոկոսը։

Սկսենք երկրի վառելիքա-էներգետիկ հաշվեկշռի կատարելագործումից։ Ըստ պլանի, էլեկտրաէներգետիկան կաճի 30 տոկոսով, այսինքն՝ այնպիսի տեմպերով, որոնք որոշ չափով ետ են մնում արտադրության աճի տեմպերից։ Նախատեսված է էլեկտրաէներգիայի ավելի խնայողական սպառում, ավելի

քիչ կորուստներ՝ փոխանցման և օգտագործման ժամանակ, ավելի քիչ տեսակարար սպառում՝ առավել առաջադիմական, տնտեսող մեքենաներով ու սարքերով, որոնց թողարկումն այժմ ընդլայնվում է, ինչպես նաև տեխնիկայի ռացիոնալ օգտագործում։

Հայկական ՍՍՀ-ում արդեն իններորդ հնգամյակում էներգետիկայի արագընթաց աճի շնորհիվ արտադրությունը լրիվին ապահովվեց սեփական էներգետիկ բազայով։ Նոր հնգամյակում այդ տեմպերն ավելի կարագանան և կկազմեն 60 տոկոս։ 1976 թվականին հանրապետությունում կարտադրվի շուրջ 10,2 մլրդ, իսկ 1980-ին՝ մինչև 15 մլրդ կվտ/ժամ էլեկտրաէներգիա։ Այստեղ տեղին է հիշել, որ դա զգալիորեն գերազանցում է էլեկտրաէներգիայի տարեկան արտադրության այն ծավալը (8,8 մլրդ կվտ/ժամ), որին ԳՈԷԼՌՈ-ի նշանավոր պլանով նախատեսվում էր հասնել ՍՍՀՄ-ում 10—15 տարվա ընթացքում։ Դա ամրապնդում է ո՛չ միայն մեր հանրապետության, այլև ողջ Անդրկովկասի էներգետիկ բազան։ Հայաստանի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթի, ինչպես և ջերմաէլեկտրակայաններում նոր կարողությունների գործարկումից հետո հանրապետության հիդրոէլեկտրակայանների բաժինը էլեկտրաէներգիայի արտադրության մեջ կկազմի ընդամենը 15 տոկոս, մի բան, որ համապատասխանում է ժողովրդական տնտեսության մեջ ջուրը խնայողաբար օգտագործելու պահանջին։

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ բնորոշ գիծը արտադրության ընդհանուր ծավալի մեջ այն ճյուղերի բաժնի ավելացումն է, որոնք առավել մեծ չափով են պայմանավորում տեխնիկական առաջընթացը։ Պլանում առանձնակի նշանակություն է տրվում մեքենաշինության զարգացմանը, որն ապահովում է ամբողջ ժողովրդական տնտեսության «ոսկրային և մկանային սիստեմի» ձևավորումն ու առաջընթացը, որոշում տեխնիկական մակարդակն ու աշխատանքի արտադրողականության աճի աստիճանը։ Եվ եթե արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալը պետք է աճի 35—39 տոկոսով, ապա մեքենաշինության արտադրանքը կավելանա 50—60, իսկ ճյուղի աշխատանքի արտադրողականությունը՝ 50 տոկոսով։ Ընդ որում, մեքենաշինության մեջ է՛լ ավելի առաջանցիկ տեմպերով է աճելու այն ճյուղերի արտադրությունը, որոնք ավելի մեծ չափով են կապված գիտա-տեխնիկական հեղափոխության հետ։ Այսպես, սարքերի և ավտոմատացման միջոցների արտադրությունը պետք է ավելանա 60—70 տոկոսով, իսկ հաշվիչ տեխնիկայինը՝ 80 տոկոսով։ Եվ այդ այն դեպքում, երբ սարքերի ու ավտոմատացման միջոցների արտադրությունը արդեն իններորդ հնգամյակում աճել էր 90, իսկ հաշվիչ տեխնիկայինը՝ 430 տոկոսով։

Հայտնի է, որ առանց էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի անհնար են տիեզերքի յուրացումը, օպտիմալ տեխնոլոգիական ռեժիմների ընտրությունը, մեքենաների ավտոմատ կառավարումը։ Առանց դրա այժմ անհնար են նաև ժողովրդական տնտեսության վարումն ու պլանավորումը։ Սովետական Միությունն ավելի քան 15 մլն անուն առարկաներ է արտադրում (ըստ որում այդ թիվը տարեցտարի աճում է) տասնյակ հազարավոր ձեռնարկություններում, որոնք հաճախ իրարից հեռու են հազարավոր կիլոմետրերով։ Առանց էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի կիրառման այդ վիթխարի արտադրության կենտրոնացված պլանավորումն ու վարումը շատ շուտով կհանգեցնեին այն բանին, որ անհրաժեշտ կլիներ կառավարչական աշխատանքով զբաղեցնել երկրի ողջ չափահաս բնակչությանը, մի բան, որ, իհարկե, անմտություն է։ Ուստի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների որակի ու դրանց արտադրության մասշտաբների անսովոր արագ առաջընթացը գիտա-տեխնիկական հեղափոխության ամենակենսական պահանջն է։ Ընդամենը 25 տարում այդ մեքենաների արագագործությունն ավելացել ու վայրկյանում 10 գործողությունից հասել է մի քանի հարյուր միլիոն գործողության և շարունակում է աճել։ Այժմ աշխարհում կա մինչև 700.000 կոմպյուտեր, և այդ թիվը շարունակում է անշեղորեն աճել։ Հասկանալի է, որ մեզ մոտ ևս էլեկտրոնային հաշվիչ մեքենաների արտադրու-



թյան հետագա աճը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման համար կենսական անհրաժեշտություն է։

Ինչպես ողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում, օրվա խնդիր է դարձել կառավարման ավտոմատ համակարգերի ներդրումը։ Ամբողջ սրությամբ ծառանում է և պլանային հաշվարկների ու ժողովրդական տնտեսության կառավարման ավտոմատ համակարգերի արմատավորման հարցը։

Արդեն անցած հնգամյակում մեքենաշինությունը մեր հանրապետությունում դարձավ արդյունաբերության առաջատար ճյուղ։ Տասներորդ հնգամյակի վերջերին դրա տեսակարար կշիռը կբարձրանա ևս 5 տոկոսով։ Ընթացիկ հնգամյակում մեքենաշինության արտադրանքի ծավալը կաճի 80 տոկոսով։ Նախատեսվում է կառուցել մեքենաշինական 13 խոշոր գործարան, ինչպես նաև վերակառուցել ու տեխնիկապես վերազինել 30 գործող ձեռնարկություններ։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» 1975 թ. ապրիլի 16-ի որոշման համաձայն, այս հնգամյակում հանրապետության արդյունաբերության մեջ կատարվող կառուցվածքային լուրջ փոփոխությունները, ամենից առաջ, նպատակ ունեն զարգացնել աշխատատար և ոչ նյութատար ճյուղերը, որոնք առավել մեծ չափով են որոշում տեխնիկական առաջընթացը։ Դրա պատճառն այն է, որ մեր հանրապետությունը, ի տարբերություն միութենական որոշ հանրապետությունների, ունի աշխատանքային ազատ ռեսուրսներ։ Իսկ մեքենաշինությունը, ինչպես հայտնի է, առավել աշխատատար ճյուղ է։ Հայկական ՍՍՀ-ն չունի սև մետաղների արտադրություն, ուստի մեզ մոտ զարգանում են արդյունաբերության ոչ մետաղատար ճյուղերը, ինչպիսիք են սարքաշինությունը, էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական արդյունաբերությունը։ Դրանք տեխնիկական առաջընթացի առավել որոշիչ ճյուղերն են։ Նախատեսվում է ստեղծել մեքենաների ու սարքերի այնպիսի ավարտուն սիստեմներ, որոնք հնարավորություն կընձեռեն կոմպլեքսային մեքենայացման ենթարկել և ավտոմատացնել ողջ տեխնոլոգիական ցիկլը։ Շինարարական, ամբարձիչ-տրանսպորտային, բեռնման-բեռնաթափման և պահեստային ծանր աշխատանքների մեքենայացման միջոցների թողարկումը կավելանա մոտ 2 անգամ։ Դա զգալիորեն կբարձրացնի արտադրության արդյունավետությունը և աշխատանքի արտադրողականությունը։

Այժմ վերանորոգման աշխատանքներով զբաղված է օժանդակ բանվորների կեսը և մետաղամշակման հաստոցների պարկի մեկ երրորդը։ Դա հետևանք է վերանորոգման աշխատանքի ցրվածության և անբավարար մասնագիտացման։ Պլանում նախատեսվում է խիստ զարգացնել մեքենաների ու սարքավորման կենտրոնացված վերանորոգումը։

Մեր արդյունաբերության մեջ ամեն տարի մաշվածության պատճառով փոխարինվում է մեքենաների մի քանի տոկոս։ Գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում մեքենայի աշխատանքի նորմալ ժամկետը 5—7 տարուց չպետք է անցնի։ Նոր հնգամյակում նախատեսված է ստեղծել արդյունաբերության լիակատար վերազինման բազա. հարկ է, ամենից առաջ, վերազինել մեքենաշինությունը։ Այդ նպատակով մետաղամշակման նոր սարքավորումը առավելապես կուղարկվի մեքենաշինական ձեռնարկություններին։

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ վերազինման տեմպերը հավանաբար կգերազանցեն միութենական տեմպերը, քանի որ մեր արդյունաբերությունը համեմատաբար «երիտասարդ» է։ Այսպես, տասներորդ հնգամյակի վերջին դրա ֆոնդերի արդեն 70 տոկոսը կկազմեն այն օբյեկտները, որոնք գործարկվել են կամ կգործարկվեն 1971—1980 թվականներին։

Ժամանակակից քիմիական արդյունաբերությունը հնարավորություն է ընձեռում մետաղները և թանկարժեք մյուս նյութերը, որոնց մշակումը խիստ աշխատատար է, փոխարինել համապատասխան հատկություններով օժտված նյութերով, պլաստմասսաներով։ Այդ արդյունաբերությունը կարևոր դեր է

խաղում գյուղատնտեսության ինտենսիվացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում։ Քիմիական արդյունաբերության աճի նույնիսկ միջին տեմպերը գերազանցում են մեքենաշինության աճի տեմպերը մոտ 5 տոկոսով։ Սակայն քիմիական արդյունաբերության ենթաճյուղերում սինթետիկ խեժերի ու պլաստմասսաների արտադրության աճի տեմպերը ամենաբարձրն են՝ 90—100 տոկոս։ Դա նույնպես գիտա-տեխնիկական հեղափոխության դրսևորումներից մեկն է, քանի որ հենց այդ ենթաճյուղն է տալիս նյութերի փոխարինողներ։ Մեծ ծրագիր է նախատեսված հանքային պարարտանյութերի արտադրության ու դրանց որակի բարելավման մարզում։ Նախատեսված է կենցաղային քիմիայի արտադրության զգալի աճ։

Հանրապետությունում քիմիական արդյունաբերությունը առավել զարգացած ճյուղերից է։ Հետագա նոր շինարարությունն այդ ճյուղում, որի ձեռնարկությունները պահանջում են մեծ տարածք, ջուր և էներգիա, մեր հանրապետության պայմաններում տնտեսապես նպատակահարմար չէ։ Ուստի, այդ ճյուղին հատկացվող զգալի կապիտալ ներդրումները հիմնականում կօգտագործվեն գործող ձեռնարկությունների վերակառուցման ու ընդլայնման համար, լուրջ միջոցառումներ կիրականացվեն բնության պահպանման և կենցաղային քիմիայի զարգացման ասպարեզում։ Քիմիական ողջ արդյունաբերության արտադրանքն այս հնգամյակում կաճի 39 տոկոսով, իսկ կենցաղային քիմիայինը՝ 2 անգամ։

Գիտա-տեխնիկական հեղափոխության համար բնորոշ է նաև միկրոբիոլոգիայի գիտական հետազոտությունների սկզբունքորեն նոր, արդյունաբերական օգտագործումը։ Բնականորեն գոյություն ունեցող և արհեստականորեն սինթեզված միկրոբային կուլտուրաներն օգտագործվում են անասնակերի մեջ և խիստ բարձրացնում անասունների մթերատվությունը. դրանց օգնությամբ սննդամթերքների մեջ ստացվում են լրացուցիչ սպիտակուցներ, որոնք բարձրացնում են այդ սննդամթերքների որակը։ Միկրոբների դերը մետալուրգիայի բնագավառում ևս շատ մեծ է. արդյունաբերության ամենաաշխատատար և թանկ նստող ճյուղերից մեկը ժամանակի ընթացքում կարող է դառնալ ամենաէժանը և նվազ աշխատատարը։ Միկրոբները կարող են քայքայել հանքապարը, իրենց մեջ սինթեզել երկաթը, պղինձը և մյուս մետաղները։ Սկզբունքորեն կարելի է միկրոբային կուլտուրաներ գտնել ամեն մի մետաղ սինթեզելու համար։ Այստեղ հեռանկարները նույնպես անսահման են։ Այդ պատճառով միկրոբիոլոգիական արդյունաբերությունը, որը Սովետական Միությունում, ըստ էության, ծնունդ է առել ութերորդ հնգամյակում, տասներորդ հնգամյակում պետք է աճի 100—110 տոկոսով, իսկ մեր հանրապետությունում այն կաճի առավել բարձր տեմպերով և կավելանա 6,7 անգամ։

Սրանք են արդյունաբերության մեջ կատարվող հիմնական կառուցվածքային որակական փոփոխությունները, որոնք հնարավորություն են ընձեռում ազգային եկամտի աճի 85—90 տոկոսն ստանալ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերում հստակորեն և գիտական խորությամբ սահմանված են հանրային արտադրության արդյունավետության ըստ ամենայնի աճի ու ինտենսիվացման, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում խնայողության խստագույն ռեժիմի հաստատման, կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման, գիտա-տեխնիկական առաջընթացի առավել արագ զարգացման խնդիրները։ Այսպիսով, տասներորդ հնգամյա պլանը, ուր գիտականորեն հիմնավորված է սոցիալիզմի տնտեսական օրենքների կոմպլեքսային իրագործումը, նոր փուլ է նշանավորում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ասպարեզում։

# ԱՌԱՎԵԼ ԱՋԱԿՑՈՒԹՅՈՒՆ ԳՅՈՒՏԱՐԱՐՆԵՐԻՆ ԵՎ ՌԱՑԻՈՆԱԼԻԶԱՏՈՐՆԵՐԻՆ

**Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ**
ՀԱՄԽ-ի նախագահ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը նշեց, որ մեր էկոնոմիկայի աննախադեպ հաջողությունները ձեռք են բերվել արտադրության ներքին ռեսուրսների ճիշտ օգտագործման, բանվորների, գյուղացիության ու մտավորականության հերոսական աշխատանքի շնորհիվ։ Այդ տեսակետից էլ նախորդ հնգամյակը հանդիսացավ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման, սովետական հասարակարգի սոցիալ-տնտեսական զարգացման նոր ժամանակաշրջան։

Անցած հինգ տարիներին մեր հայրենիքի եղբայրական մեծ ընտանիքում սոցիալ-տնտեսական հսկայական նվաճումների են հասել նաև Հայաստանի աշխատավորները։ Հանրապետության ազգային եկամուտն ավելացել է 46 տոկոսով։ Զգալիորեն աճել է արտադրա-տեխնիկական պոտենցիալը. կառուցվել են արդյունաբերական տասնյակ նոր ձեռնարկություններ, վերակառուցվել են մի շարք գործարաններ ու ֆաբրիկաներ, ընդլայնվել, արդիականացվել ու վերակառուցվել են բազմաթիվ արտադրություններ։ Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ հինգ տարում ներդրվել են նոր տեխնիկայի ավելի քան 2.400 կարևորագույն միջոցառումներ։

Ժողովրդական տնտեսության զարգացումն ուղեկցվում է բանվորների, գյուղացիության, ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական ակտիվության զգալի աճով, որոնց առաջադեմ ջոկատն են մեր գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ Նրանց ստեղծագործական աշխատանքը մեծապես նպաստում է արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացմանը, թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը, աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացմանը։

Իններորդ հնգամյակում մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ ներդրված գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների շնորհիվ տնտեսվել են 19,5 մլրդ ռուբլու աշխատանքային և նյութական ռեսուրսներ։ Երկրի նորարարների բանակում իրենց ուրույն տեղն ունեն և մեր հանրապետության գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ Անցած հինգ տարին բնորոշվում է մեր նորարարների տեխնիկական ստեղծագործության մասսայականության և արդյունավետության աճով։ Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, որոնցում առանձնահատուկ նշանակություն տրվեց սոցիալիստական մրցության կատարելագործմանը, հանրապետությունում լայնորեն ծավալվել է գյուտարարների ու ռացիոնալիզատորների գործարար մրցությունը՝ ներգրավելով 500-ից ավելի կոլեկտիվներ, մոտ 800 արտադրամասեր, բաժիններ, ստեղծագործական բրիգադներ, 6.000-ից ավելի գյուտարարների և ռացիոնալիզատորների։ Հանրապետությունում գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների օգտագործման շնորհիվ ստեղծվել է 130 միլիոնանոց տնտեսման ֆոնդ, որն ութերորդ հնգամյակում ձեռք բերվածը գերազանցում է 25 տոկոսով։ Ելնելով ժողովրդական տնտեսության առջև դրված խնդիր-

ների լուծման սեղմ ժամկետներից, հարկ եղավ վերանայել ստանձնած պարտավորությունը. այդ բնագիծն ստացավ իր նոր բանաձևը. «Հնգամյակը՝ չորս տարում»։ Այդ լարված պարտավորությունը պատասխանն էր կուսակցության ու կառավարության այն բարձր գնահատականի, որ տրվեց մեր երկրի գյուտարարների ու ռացիոնալիզատորների հայրենանվեր աշխատանքին, ընկերությանն արժանացնելով հայրենիքի բարձրագույն պարգևին՝ Լենինի շքանշանին։

Դա 1973 թվականին էր՝ հնգամյակի վճռական տարում։ Ստանձնած պարտավորությունների կատարումն ապահովելու նպատակով մոբիլիզացվեցին ստեղծագործ ուժերը, որոնում էին աշխատանքի ու արտադրության կազմակերպման նոր ձևեր ու մեթոդներ, յուրաքանչյուր կոլեկտիվում խթանվում էր աշխատանքային խանդավառությունը, ջանում էին կատարելագործել բարոյական ու նյութական խրախուսման մեթոդները։ Եվ հանրապետության նորարարները հնգամյա պարտավորությունը կատարեցին չորս տարում։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը շնորհավորեց մեր Միության գյուտարարներին ու ռացիոնալիզատորներին՝ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու առթիվ։

Հանրապետության բազմաթիվ գյուտարարներ, ռացիոնալիզատորներ ու ստեղծագործ կոլեկտիվներ լրացուցիչ պարտավորություններ ստանձնեցին հնգամյակի եզրափակիչ տարվա համար։ Աշխատավորների ստեղծագործական ակտիվության հետագա զարգացման ընթացքի վրա բարերար ազդեցություն ունեցավ ՀԱՄԽ-ի և ընկերության հանրապետական խորհրդի կողմից հայտարարված սոցիալիստական մրցությունը, որի ճիշտ կազմակերպումն ու ընթացքը հնարավորություն ընձեռեցին մի շարք մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների՝ զգալիորեն բարելավելու գյուտարարական ու ռացիոնալիզատորական աշխատանքների վիճակը։

Հայաստանի գյուտարարների ու ռացիոնալիզատորների, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների բարեխիղճ աշխատանքի շնորհիվ իններորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության ոլորտում օգտագործվել են ռացիոնալիզատորական 82 հազար առաջարկություն և 906 գյուտ, որոնց շնորհիվ տնտեսվել են 166 մլն ռուբլու աշխատանքային, նյութական ու էներգետիկ միջոցներ, ստանձնած պարտավորության 130 մլն ռուբլու փոխարեն։ Այս գործում մեծ է քիմիայի, մեքենաշինության, էլեկտրատեխնիկական, թեթև արդյունաբերության գյուտարարների և ռացիոնալիզատորների ավանդը։

Շատ են մեր այն ձեռնարկություններն ու կազմակերպությունները, որոնցում ստեղծված է իրոք ստեղծագործական մթնոլորտ, որտեղ հոգատար, ուշադիր են գյուտարարների ու ռացիոնալիզատորների նկատմամբ։ Այդ կոլեկտիվներում տարեցտարի բարելավվում է աշխատանքների վիճակը, բարձրանում են ցուցանիշները։ Այդպիսի կոլեկտիվներից են Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձա-մոլիբդենային կոմբինատի, Երևանի «Նաիրիտ» արտադրամիավորման, ջերմաէլեկտրակայանի, «Էլեկտրոն» գործարանի, նուրբ-բրդյա գործվածքների կոմբինատի, արդյունաբերական շինարարության մետաղյա կոնստրուկցիաների գործարանի, մաթեմատիկական մեքենաների, պոլիմերային սոսինձների, պոլիմերային նյութերի, քարի և սիլիկատների, կոմպլեքսային էլեկտրասարքավորումների գիտահետազոտական ինստիտուտների, Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական գործարանի, Երևանի արհեստական ալմաստների գործարանի կոլեկտիվները։

Անհատական սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու մասին զեկուցեցին հանրապետության հազարավոր գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ։ Նրանցից են հանրապետության անվանի նորարարներ, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի փականագործ Շ. Աբելյանը, Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի բրիգադավար Մ. Ալեկյանը, պոլիմերային նյութերի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի ավագ գիտաշխատող Ն. Փափազյանը, «Նաիրիտ» արտադրամիավոր-



ման ավագ ինժեներ Լ. Քալանթարյանը, կաբելի գործարանի փականագործ Ժ. Շահբազյանը, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի գլխավոր տեխնոլոգի տեղակալ Ռ. Սուլուտյանը, նույն գործարանի հավաքող բանվոր Ջ. Խարազանյանը, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի հորատող բանվոր Վ. Գալստյանը, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի տեխնիկական բաժնի վարիչ Գ. Դնոյանը և ուրիշներ։

Ձեռք բերված հաջողությունների մեջ մեծ է ընկերության ակտիվիստների, շրջանային, քաղաքային և միացյալ խորհուրդների ավանդը, որոնցից հարկ է նշել Լենինականի (նախագահ՝ Վ. Աբգարյան), Կիրովականի (նախագահ՝ Գ. Ատրոշչենկո), Ղափանի (նախագահ՝ Վ. Դուրինյան), Կամոյի (նախագահ՝ Ռ. Խաչատրյան) կազմակերպությունները, հանրապետական խորհրդի ակտիվիստներ Ա. Միքայելյանի, Լ. Գրիգորյանի, Ռ. Գրիգորյանի, Մ. Բաբաջանյանի, Ա. Գալստյանի, Գ. Իսաբեկյանի, Բ. Վարդանյանի և շատ ու շատ ուրիշների անունները։ Մեծ են նրանց ծառայությունները ժողովրդական տնտեսության առջև դրված խնդիրների լուծման գործում։

ՍՄԿԿ XXV համագումարը սահմանեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման ուղղությունների նոր խնդիրները։ Մեր հանրապետության անելիքները նույնպես մեծ են, պատասխանատու։ Այդ խնդիրների մասշտաբների մասին կարելի է դատել հանրապետության 1976 թվականի պլանային ցուցանիշներով. տասներորդ հնգամյակի առաջին տարում Հայաստանում պետք է թողարկվի 4 մլրդ 45 մլն ռուբլու արդյունաբերական համախառն արտադրանք, ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը նախատեսված է հասցնել 1 մլրդ 80 մլն ռուբլու։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը կավելանա 43—47 տոկոսով, մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները՝ 20—22, բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը՝ 16—18 տոկոսով։

Հետագա հինգ տարիներին մեր կուսակցության ողջ գործունեության նպատակը կլինի զարգացնել հանրային արտադրությունը, որի հիմնական գրավականը կլինեն գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և թողարկվող արտադրանքի որակի բարելավումը։ Այս կարևոր խնդիրների լուծումն է գյուտարարների և ռացիոնալիզատորների ողջ գործունեության նպատակը։

Ժողովրդական տնտեսության զարգացման ժամանակակից փուլը բնորոշվում է արտադրաուժերի զարգացման որակական նոր աստիճանով, որը տեղի է ունենում տարեցտարի ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում։ Եվ այդ զարգացման կարևորագույն խթաններից է աշխատանքային կոլեկտիվների համար ստեղծագործական ակտիվության մթնոլորտի ստեղծումը, մթնոլորտ, ուր կբացահայտվեն արտադրության ռեզերվները, թողարկվող արտադրանքի որակի բարելավման, աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերը։

ՍՄԿԿ XXV համագումարում գիտատեխնիկական հեղաշրջման արագացումը գնահատվեց որպես սոցիալիստական հեղափոխության խնդիրների լուծման և դրա հիման վրա՝ կոմունիստական հասարակարգի կառուցման հիմք։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը իր զեկուցման մեջ նշեց, որ տնտեսական ողջ շինարարության ասպարեզում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը արդի ամենահրատապ ու պատասխանատու խնդիրն է։

Տեխնիկական ստեղծագործությունը մեր օրերում դարձել է կյանքի նորմը։ Աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի պահանջն զգացվում է ամենուրեք, ամեն քայլափոխում։ Այժմ կասկածից վեր է, որ առանց գյուտարարության և մասսայական ռացիոնալիզացիայի հնարավոր չէ ապահովել գիտատեխնիկական առաջընթացը՝ որպես գիտության նորագույն նվաճումների հիման վրա տեխնիկայի կատարելագործման անընդհատ պրոցես։ Ելնելով դրանից, մեր առաջնահերթ խնդիրը պետք է համարել գյուտարարական ու ռացիոնալիզատորական շարժման մասսայականության և արդյունավետության հետագա զարգացումը։

Սակայն, եթե մեր գործունեությունը գնահատենք ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից ելնելով, ապա կտեսնենք, որ հանրապետությունում գյուտարարական և ռացիոնալիզատորական աշխատանքների կազմակերպման գործում դեռևս լուրջ թերություններ կան։

Մեր խնդիրն է այնպես անել, որ մշտապես ստվարանան գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերության անդամների շարքերը, ավելանա ներկայացված և ներդրված առաջարկությունների թիվը։ Սակայն ինչպիսի՞ն է այժմյան վիճակը։

1975 թվականին գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության անդամների թիվը, իններորդ հնգամյակի առաջին տարվա համեմատությամբ, ավելացել է 1,6 անգամ՝ հասնելով 67 հազար մարդու։

Այդ լավ է։ Թվում էր, թե այդ համաչափությամբ էլ պետք է ավելանար ռացիոնալիզատորների և գյուտարարների թիվը։ Սակայն վերջին տարիներս ռացիոնալիզատորների ու գյուտարարների թիվը հանրապետությունում ամեն տարի ավելացել է միայն 3 տոկոսով՝ կազմելով 18.800 մարդ։ Այդ ցույց է տալիս, որ մեր ձեռնարկությունների շատ ղեկավարներ, արհմիութենական կազմակերպություններ վատ են զբաղվում գյուտարարական ու ռացիոնալիզատորական գործով։ Այդ թվերը վկայում են նաև, որ գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության կազմակերպությունները դեռևս անբավարար են զբաղվում ընկերության անդամներին տեխնիկական ստեղծագործության ոլորտը ներգրավելու խնդրով։

Արդյունաբերական շատ ձեռնարկություններում գոհացուցիչ չէ բանվորների մասնակցությունը ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքին։ Հարկ է նշել, որ նման վիճակն այսօր չի համապատասխանում ժամանակի պահանջներին— բանվորներին առավելագույնս ներգրավել մասսայական ռացիոնալիզատորական աշխատանքում։

Յուրաքանչյուր արտադրության առջև դրված է հետևյալ հիմնական խնդիրը— աշխատանքի արտադրողականության, թողարկվող արտադրանքի որակի բարձրացմամբ, դրա ինքնարժեքի իջեցմամբ ապահովել արտադրական պլանների կատարումն ու գերակատարումը։ Այդ հիմնական հարցի վրա պետք է կենտրոնացվեն կոլեկտիվի ողջ ուժերն ու կարողությունները։ Իսկ դա հնարավոր է միայն այն դեպքում, երբ կոլեկտիվում ստեղծված է մրցության մթնոլորտ, երբ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ ձգտում է որոնել ու բացահայտել արտադրության թաքնված ռեզերվները։ Ռեզերվների բացահայտումն ինքնին ստեղծագործական պրոցես է։ Այստեղ, ինչպես տեսնում ենք, ակնհայտ է տեխնիկական ստեղծագործության և արտադրության խնդիրների անմիջական կապը։

Ամենից առաջ խոսքը վերաբերում է գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորմանը։ 1976 թ. հունվարի 1-ի դրությամբ հանրապետությունում չքննարկված և չօգտագործված են մնացել 5.265 առաջարկություն. օգտագործվել է ներդրման համար ընդունված առաջարկությունների 84 տոկոսը միայն։ Դա այն բանի հետևանք է, որ հանրապետությունում մի շարք ձեռնարկություններ լուրջ ուշադրություն չեն նվիրում գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների օգտագործման ժամկետների արագացման հարցերին։

«Հայէլեկտրաապարատ» արտադրամիավորման ձեռնարկություններում 1975 թ. տվյալներով ներդրվել է ընդունված առաջարկությունների միայն 54 տոկոսը, «Պոլիվինիլացետատ» գործարանում՝ 54, Ղափանի պղնձա-հանքային կոմբինատում՝ 60, ֆրեզերային հաստոցների գործարանում՝ 66, Արթիկ-տուֆ կոմբինատում՝ 37, մոնտաժային նախապատրաստուքների գործարանում՝ 46 տոկոսը և այլն։

Իսկ ինչպե՞ս են պատճառաբանում ստեղծված վիճակը այդ ձեռնարկությունների ղեկավարները։ Նրանց մի մասն այն արդարացնում է արտադրական պլանների խիստ լարվածությամբ և ղեկավար աշխատողների զբաղվածությամբ, մյուսը՝ արտադրության առանձնահատկություններով, սարքաշինա-



կան արտադրամասերի ծանրաբեռնվածությամբ, անհրաժեշտ նյութերի ու սարքավորումների բացակայությամբ և այլն։

Հիմնավորվա՞ծ են արդյոք նշված պատճառները։

Նախ և առաջ սխալ են այն ընկերները, որոնք գյուտարարությունն ու ռացիոնալիզացիան համարում են աշխատանքի երկրորդական, սակավ կարևոր ոլորտ։ Չէ՞ որ ամեն մի առաջարկ նպաստում է արտադրական պլանների կատարման հետ կապված հարցերի արագ ու արդյունավետ լուծմանը։ Միաժամանակ հարկ է նշել, որ գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների, առանձնապես բարձր արդյունավետ առաջարկների, ներդրումը բավականին բարդ պրոցես է։ Իրոք, առաջարկի իրականացման ամեն մի փուլ՝ տեխնիկական և կոնստրուկտորական փաստաթղթերի մշակում, փորձանմուշի պատրաստում, դրա փորձարկում և, վերջապես, արդյունաբերական շահագործման հանձնում, ձեռնարկության համար հաճախ դառնում է ինքնուրույն պրոբլեմատիկ հարց։

Այդ գործում գոյություն ունի տարիների ընթացքում կուտակված փորձ և ներկայումս կիրառվում է օրենսդրությամբ նախատեսված գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման միասնական մեթոդիկա։ Գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների օգտագործման պրոցեսի պլանավորումն է այդ։ Նշված փուլերի պլանային իրականացումն զգալի չափով կարագացնի առաջարկների իրացման ժամկետները։

Այդ առնչությամբ անհրաժեշտ է նաև ապահովել ռացիոնալիզատորական աշխատանքի արդյունավետությունը։ Գյուտարարների ու ռացիոնալիզատորների աշխատանքը չի կարելի թողնել ինքնահոսի, այն հարկավոր է ղեկավարել, ուղղություն տալ։ Յուրաքանչյուր ձեռնարկությունում պետք է նշվեն ռացիոնալիզատորների ու գյուտարարների կոնկրետ խնդիրները։

Դա, առաջին հերթին, ձեռնարկությունների ղեկավարների, գլխավոր ինժեներների, գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերության սկզբնական կազմակերպությունների պարտականությունն է։ Հարկավոր է նպատակասլաց օգտագործել մեր ռացիոնալիզատորների ու գյուտարարների փորձը և ստեղծագործությունը։

Ժամանակն է, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում մշակվեն արտադրության կենսական խնդիրների լուծմանը նպաստող, որակյալ կազմված թեմաներ՝ գյուտարարների և ռացիոնալիզատորների համար։ Նպատակահարմար է նման թեմաներ ունենալ նաև ըստ մինիստրությունների ու գերատեսչությունների։ Հարկ է ամենուրեք օգնել մեր ռացիոնալիզատորներին՝ իրենց առաջարկությունների մշակման ու ներդրման գործում։

Թեմատիկ պլանավորումը եղել և մնում է գյուտարարության ու ռացիոնալիզացիայի կազմակերպման գործնական ձևերից ամենաարդյունավետը։ Այդ ասպարեզում դրական արդյունքի են հասել Կիրովականի քիմիական, Չարենցավանի հաստոցաշինական և թեթև արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ։ Դրա հետ մեկտեղ, դեռևս շատ են այն ձեռնարկություններն ու կազմակերպությունները, որտեղ թեմատիկ պլաններ կա՛մ չեն կազմվում, կա՛մ կրում են ձևական բնույթ։

Ելնելով թեմատիկ պլաններում նշված վարձատրության մոտավոր չափից՝ նորարարը հնարավորություն կունենա ճիշտ կողմնորոշվելու, թե ո՛ր խնդիրներն են արտադրության համար ժամանակի տեսակետից կարևոր, ինչի՛ վրա պետք է կենտրոնացնել ուշադրությունը։ Թեմատիկ պլանավորման այդ ձևը հնարավորություն կընձեռի զգալիորեն արագացնելու արտադրության, այսպես կոչված՝ «նեղ տեղերի» հետ կապված հարցերի լուծումը։

Մեր կարծիքով, հաճախ թերագնահատվում է ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքի նշանակությունը։ Շատ կոլեկտիվներ ու դրանց ղեկավարներ հաճախ ռացիոնալիզատորական աշխատանքին վերաբերող պարտավորություններ են վերցնում և մոռանում այդ մասին։ Գյուտարարական աշխատանքի թերագնահատումը դրսևորվել է նաև այն բանում, որ ձեռնարկություններում շատ հաճախ հաստիքների կրճատումը կատարվում է ռացիոնա-

լիզատորների և գյուտարարների հաշվին։ Երբեմն էլ նրանց հանձնարարվում են իրենց չվերաբերող պարտականություններ։

Գյուտարարական ու ռացիոնալիզատորական աշխատանքի կազմակերպման թերագնահատման արտահայտություններից է և այն, որ մի շարք ղեկավարներ գտնում են, թե ձեռնարկություններում այդ աշխատանքը պետք է կազմակերպեն ռացիոնալիզատորների ու գյուտարարների համամիութենական ընկերության կազմակերպությունները, արհմիութենական կոմիտեները կամ, լավագույն դեպքում՝ այդ գործի համար նշանակված առանձին մարդիկ։

Այդ սխալ է։ Գյուտարարական ու ռացիոնալիզատորական աշխատանքի կազմակերպմամբ առաջին հերթին պետք է զբաղվեն ձեռնարկությունների ղեկավարները։

Զգալի թերություններ կան գյուտարարության և ռացիոնալիզացիայի հետ կապված ծախսերի պլանավորման գործում։ 1975 թ. տվյալներով, հանրապետությունում այդ նպատակներով նախատեսված 3 մլն 800 հազար ռուբլուց իրացվել է միայն 2 մլն 300 հազարը, կամ՝ 60 տոկոսը։ «Հայէլեկտրաապարատ» միավորումը 1974 թ. նախատեսել էր կատարել ռացիոնալիզացիայի հետ կապված 97 հազար ռուբլու ծախսեր, սակայն փաստորեն ծախսվել է միայն 23,9 հազար ռուբլի, կամ՝ 24,6 տոկոսը, 1975 թ. համար նախատեսված 95,8 հազար ռուբլուց ծախսվել է 17 հազարը, կամ՝ 17,7 տոկոսը։ 1976 թ. համար պլանավորված է 97 հազար ռուբլի։

Անհանգստացնում է մի այլ հարց ևս։ Տնտեսման գումարի պլանավորման հարցն է այդ։ Մի շարք ձեռնարկությունների, գերատեսչությունների ու մինիստրությունների ղեկավարներ արդեն հաշտվել են ցածր, կոլեկտիվների հնարավորություններին չհամապատասխանող պլանային ցուցանիշների հաստատման պրակտիկայի հետ։ Նման մոտեցում ունեցողներին ուզում ենք հիշեցնել 1975 թ. հունվարյան պլենումում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման հետևյալ խոսքերը. «Մենք պետք է ունենանք լարված, բայց ռեալ պլաններ, մեր բոլոր ջանքերը նվիրենք դրանց կատարմանն ու գերակատարմանը...»։

Կոմունիստական կուսակցության XXV համագումարը լուրջ ուշադրություն նվիրեց սոցիալիստական մրցության հետագա զարգացման հարցերին։ Սոցիալիստական և կոմունիստական շինարարության բոլոր օղակներում մրցությունը եղել և մնում է մասսաների ստեղծագործական նախաձեռնության զարգացման, սոցիալիստական կոլեկտիվների ձևավորման հզոր միջոց։

Սոցիալիստական մրցության գլխավոր նախապայմանը ռեալ պարտավորությունների ստանձնումն է։ Այնինչ այսօր ունենք ձեռնարկություններ ու կազմակերպություններ, որոնք, հաշվի չառնելով իրենց հնարավորությունները, ստանձնում են շատ ավելի ցածր պարտավորություններ։ Երարդշին տրեստը պարտավորվել է 1976 թ. տնտեսել 200 հազար ռուբլի այն դեպքում, երբ 1975 թ. փաստացի տնտեսվել է 366,5 հազար ռուբլի։ Լենինականի հղկող հաստոցների գործարանը պարտավորվել է տասներորդ հնգամյակում տնտեսել 380 հազար ռուբլի, իններորդի 480 հազարի դիմաց և այլն։ Ցածր, ոչ լարված պարտավորություններ են ստանձնել արդյունաբերական շինարարության, քիմիայի, ռադիոէլեկտրոնիկայի, թեթև ու սննդի արդյունաբերության և մի շարք այլ ճյուղերի ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնց ղեկավարները, հավանաբար, աշխատում են իրենց համար ավելի հանգիստ, չմոբիլիզացնող պայմաններ ստեղծել։

Լուրջ բարելավման կարիք ունի նաև գյուտարարների ու ռացիոնալիզատորների նյութական և բարոյական խրախուսման գործը։ Հարկ է ակտիվացնել և կատարելագործել բարոյական խրախուսման ձևերն ու մեթոդները։ Ինչ վերաբերում է նյութական խրախուսմանը, ապա անհրաժեշտ է նշել, որ հանրապետության նորարարները վատ չեն վարձատրվում։ Իններորդ հնգամյակի ընթացքում գյուտարարներին ու ռացիոնալիզատորներին, ինչպես նաև ներդրման գործում օժանդակողներին խրախուսելու համար վճարվել է ավելի քան 10 մլն ռուբլի։ Օգտագործված ռացիոնալիզատորական մեկ առաջարկության համար



հանրապետությունում, միջին հաշվով, վճարվում է 70—80 ռուբլի հեղինակային վարձատրություն, մինչդեռ միութենական միջին ցուցանիշը չի գերազանցում 50 ռուբլուց։

Որպես անհանդուրժելի թերություն, պետք է նշել հեղինակային վարձատրության վճարման ժամկետների անհիմն ձգձգումները։ Այդպիսի վիճակ է տիրում սննդարդյունաբերության մինիստրության որոշ ձեռնարկություններում, շինարարական մի շարք կազմակերպություններում և գրեթե բոլոր ճյուղերի առանձին ձեռնարկություններում։ Անհրաժեշտ է վերջնականապես արմատախիլ անել քաշքշուկն ու բյուրոկրատիզմը այս ասպարեզում, հաշվի առնելով, որ նման երևույթներն արգելակում են այդ աշխատանքների, գյուտարարության ու ռացիոնալիզացիայի հետագա ծավալմանը։

Գիտության ու տեխնիկայի բուռն զարգացման պայմաններում տարեցտարի աճում են գյուտերի մշակման և արտադրության մեջ դրանց արմատավորման հետ կապված հարցերի դերն ու նշանակությունը։ Ուրախալի է, որ մեր հանրապետությունում նկատվում է ցուցանիշների զգալի աճ։ Անցած հնգամյակում 889 առաջադրանքներ ճանաչվել են որպես գյուտ և պաշտպանվել հեղինակային վկայագրերով։ Դրական արդյունքների են հասել պոլիմերային սոսինձների, մաթեմատիկական մեքենաների, պոլիմերային նյութերի և մի շարք այլ գիտահետազոտական կազմակերպությունների կոլեկտիվները։ Նույն ժամանակաշրջանում ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է 906 գյուտարարական առաջարկություն, այդ թվում միայն հնգամյակի եզրափակիչ տարում՝ 238 գյուտ։ Հիշենք, որ տասը տարի առաջ՝ 1966 թ., ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է միայն 34 գյուտ։

Գյուտերի արմատավորման բնագավառում զգալի հաջողությունների են հասել թեթև արդյունաբերության ձեռնարկությունները։ Իններորդ հնգամյակում հանրապետությունում ներդրված 906 գյուտերից 431-ը օգտագործվել է թեթև արդյունաբերության մեջ։ Ճիշտ է, մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ բավականին բարելավել են աշխատանքներն այդ ուղղությամբ։ 1975 թ. քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում արմատավորվել է 18 գյուտ, հաստոցաշինության բնագավառում՝ 16, արդյունաբերական շինարարության՝ 9, գյուղատնտեսության՝ 5 գյուտ։ Սակայն, դրա հետ մեկտեղ, կան մինիստրություններ ու գերատեսչություններ, որոնք պատշաճ ուշադրություն չեն նվիրում արդյունավետ գյուտերի օգտագործման հարցերին։ Վերջին երկու տարում գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում արմատավորվել է միայն 1, սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկությունում՝ 1 գյուտ, իսկ էլեկտրոնիկայի, գյուղական շինարարության, մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների, անտառային և փայտամշակման ձեռնարկություններում գյուտի մակարդակով առաջարկներ չեն եղել։

Վերջին տարիներս զգալիորեն բարելավվել են արտոնագրային ծառայությունների աշխատանքները, որի շնորհիվ գիտահետազոտական որոշ կազմակերպություններում, թեմատիկան հաստատվելուց առաջ, կատարվում են առանձին թեմաների արտոնագրային հետազոտություններ։

Սակայն վերջին տարիների տվյալների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ վիճակն ընդհանուր առմամբ չի բարելավվել։ Գյուտերի համար ներկայացված հայտերի թիվը 1975 թ., 1974 թ. համեմատությամբ, 450-ից իջել է 408-ի, գյուտ է ճանաչվել 141 առաջարկ՝ նախորդ տարվա 172-ի դիմաց, իսկ 82 առաջարկ մերժվել է հիմնականում նորույթ չպարունակելու պատճառով։ Հնգամյակի ընթացքում Գյուտերի ու հայտնագործությունների գործերի պետական կոմիտեն մերժել է 532 հայտ։

Կարևոր նշանակություն ունի գյուտարարական աշխատանքի կազմակերպումը մեր գիտական ձեռնարկություններում, մինիստրություններում ու գերատեսչություններում։ Այդ հարցին հարկավոր է հատկապես անդրադառնալ, քանի որ վերոհիշյալ հիմնարկություններում կենտրոնացված են գիտական ու ինժեներական մեծաթիվ ուժեր, և մենք իրավասու ենք սպասելու նրանցից ավելի արդյունավետ գործեր։

Մի քանի խոսք ինստիտուտներում տարվող գյուտարարական աշխատանքների վիճակի մասին: Գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական և նախագծային-տեխնոլոգիական կազմակերպությունների գործունեության չափանիշն այժմ ոչ թե մշակված թեմաների, այլ ուսումնասիրությունների, հետազոտությունների արդասիքը հանդիսացող գյուտերի, արտոնագրերի թիվն է: Ցավոք, մեզ մոտ կան ինստիտուտներ, որոնք, կատարելով մեծ ծախսեր, քիչ նոր մշակումներ են ներկայացնում:

Ծավալուն, բեղմնավոր աշխատանք են կատարում մեր գիտությունների ակադեմիան, նրա ինստիտուտները: Սակայն որոշ ինստիտուտներում անհրաժեշտ է բարելավել գյուտարարական աշխատանքը:

Զգալի անելիքներ ունեն և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության բարձրագույն ուսումնական հաստատությունները, որոնք, բացի ուսումնական ծրագրից, մեծ աշխատանք են կատարում տնտպայմանագրային սկզբունքներով և բյուջեի հաշվին: 1975 թ. պետական համալսարանում ներկայացվել է 2 հայտ և ստացվել է 4 դրական որոշում հեղինակային վկայագիր ստանալու մասին: Պոլիտեխնիկական ինստիտուտում նույն ժամանակամիջոցում ներկայացվել է 32 հայտ և ստացվել 2 դրական որոշում: Մինչդեռ Բելոռուսիայի պոլիտեխնիկական ինստիտուտում (որը համազոր է Երևանի պոլիտեխնիկականին) 1975 թ. ներկայացվել է 190 հայտ, որից 50-ը ճանաչվել է որպես գյուտ:

Գյուտարարական աշխատանքների ցածր մակարդակն էլ, իր հերթին, հասցնում է արտոնագրա-լիցենզիոն աշխատանքների անբավարարության: Չնայած տասնյակ գյուտեր արտոնագրվել են արտասահմանյան բազմաթիվ երկրներում, մենք չենք կարող պարծենալ վաճառված և ոչ մի լիցենզիայով:

Նշված թերությունները խոչընդոտում են տեխնիկական ստեղծագործության արդյունավետության բարձրացմանը: Դժվար է նշել հասարակական արտադրության մի այլ բնագավառ, որտեղ 1 ռուբլի ծախսի դիմաց ստացվեր 20 ռուբլու հասույց: Ուստի, բարելավելով այդ աշխատանքների քանակական ու որակական ցուցանիշները՝ հնարավոր կլինի ավելացնել հանրային հարստությունը: Դրան կարելի է հասնել աշխատավորական լայն զանգվածներին գյուտարարության ու ռացիոնալիզացիայի ոլորտը ներգրավելով: Մինչդեռ այդ աշխատանքներին մեր հանրապետությունում այժմ մասնակցում են 53 աշխատողից 1-ը, իսկ ժողովրդական տնտեսության առանձին բնագավառներում, ինչպես արդյունաբերության մեջ 25-ից մեկը, շինարարության՝ 56-ից, գյուղատնտեսության՝ 330-ից մեկը:

Անհրաժեշտ է հետևողականորեն պայքարել այնպիսի աններելի երևույթների դեմ, ինչպիսիք են՝ քաշքշուկը, բյուրոկրատիզմը և տեխնիկական պահպանողականությունը, պահպանել առաջարկների քննարկման՝ օրենքով սահմանված ժամկետները:

Լուրջ ուշադրություն պետք է նվիրել հեղինակների բարոյական ու նյութական խրախուսմանը, օգնության համար նախատեսված միջոցների նպատակային օգտագործմանը, թեմատիկ և ֆինանսական պլանների մշակման և կատարման հարցերին:

Վերոհիշյալ թերությունները, անշուշտ, հետևանք են նաև գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության հանրապետական խորհրդի և Հայկական ՍՍՀ պետպլանին կից ստեղծված գյուտարարության և արտոնագրային-լիցենզիոն աշխատանքում գերատեսչական հանձնաժողովի անբավարար գործունեության: Թերևս այդ կարևոր գործին պատշաճ ուշադրություն չի նվիրել նաև արհմիությունների հայկական հանրապետական խորհուրդը:

Արհմիութենական կազմակերպությունները պետք է հետևողական աշխատանք տանեն այս ասպարեզի գործունեության ճիշտ կազմակերպման նպատակով, գործնական օգնություն և ուղղություն ցույց տան ընկերության խորհուրդներին իրենց առջև դրված խնդիրների լուծման համար:

# ՍՄԿԿ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՆՊԱՏԱԿԸ

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականության կենտրոնում միշտ եղել և մնում է ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացումը: Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին, երբ երկիրն ապրում էր քաղաքացիական կռիվների, սովի ու համաճարակի պայմաններում, Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ սոցիալիստական արտադրաեղանակի գերագույն նպատակն է բարձրացնել աշխատավորների կենսամակարդակը, նպաստել նրանց բազմակողմանի զարգացմանը: 1921 թվականին գրած Աշխատանքի ու պաշտպանության խորհրդի նակազում Վլադիմիր Իլյիչն ընդգծում է, որ արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխուժացումով պետք է... հաշվենք, թե երկիրը ինչ ռեսուրսներ ունի և ինչ եղանակով կարելի է ամենից ավելի հաստատ կերպով բարելավել բանվորների ու գյուղացիների դրությունը (տե՛ս Երկեր, հ. 32, էջ 485):

Վ. Ի. Լենինը մտահոգվում էր բանվորական կոլեկտիվներին, գյուղի աշխատավորներին կենսամթերքներով ապահովելու հարցով: 1920 թվականին Սիբիրի հեղկոմին հղած նամակով նա պահանջում էր, որպեսզի հեղկոմը տեղական միջոցներից պարենամթերքներ մատակարարի չքավոր գյուղացիներին (տե՛ս ПСС, т. 51, стр. 288):

Հավատարիմ լենինյան սկզբունքներին, կոմունիստական կուսակցությունը հետևողականորեն վարում է այնպիսի քաղաքականություն, որպեսզի բարենպաստ նախադրյալներ ստեղծվեն սոցիալիստական արտադրության գերագույն նպատակի՝ աշխատավորների կենսամակարդակի անշեղ բարձրացման համար:

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության, աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման, առողջության պահպանման, նրա հոգեկան աշխարհի հարստացման վերաբերյալ կուսակցության քաղաքականության ելակետային դրույթները հստակորեն շարադրված են ՍՄԿԿ ծրագրում: Զարգացած սոցիալիստական հասարակարգում, երբ ավելի շատ են սովետական պետության հնարավորությունները, երկրի էկոնոմիկան առավել մեծ մասշտաբով է ծառայում աշխատավորների կյանքի բարելավմանը: Կուսակցության այդ քաղաքականությունն իր վառ արտահայտությունն է գտնում ՍՄԿԿ համագումարների և Կենտկոմի պլենումների փաստաթղթերում, սովետական կառավարության որոշումներում: «Ինչպես որ ամեն մի ստրատեգիա,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— կուսակցության տնտեսական ստրատեգիան սկսվում է խնդիրների առաջադրումից, հիմնական, տևական նպատակների առաջադրումից: Դրանց մեջ գերագույնը եղել է ու մնում է ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 65):

*Հնգամյակից հնգամյակ ավելի շատ միջոցներ են հատկացվում թեթև ու սննդի արդյունաբերության զարգացմանը, առողջապահության ու ժողովրդական կրթությանը: Ինչպես ՍՄԿԿ XXIV համագումարի, այնպես էլ կուսակցության XXV համագումարի փաստաթղթերում տեսական խոր հիմնավորվածությամբ ցույց է տրված, որ ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ծրագիրը հնարավոր է իրագործել արտադրության դինամիկ և համակողմանի զարգացման, դրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության ու որակի լստ ամենայնի բարձրացման հիման վրա:*

*ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացումը պլանավորելիս ՍՄԿԿ Կենտկոմը, սովետական կառավարությունը առանձնահատուկ կարևորություն են տալիս նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործմանը: Այդ սկզբունքով են կազմվում հնգամյա պլանները: Ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու շնորհիվ մեր երկրի տնտեսական պոտենցիալն զգալիորեն աճեց, իսկ վերջին տաս տարիներին, նախորդ տասնամյակի համեմատությամբ, այն կրկնապատկվեց: Անցած հնգամյակի ուղղությունն ու բնույթը լիովին համապատասխանում էին ՍՄԿԿ XXIV համագումարի դրույթներին ու դիրեկտիվներին: Արտադրության մեջ ավելի մեծ մասշտաբներով ներդրվեց նորագույն ու առաջնակարգ տեխնիկան: Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ավելի արագորեն զարգացավ արտադրության կարևորագույն տեսակների՝ սարքերի, մեքենաների ու սարքավորումների արտադրությունը, արմատավորվեցին ավելի կատարյալ տեխնոլոգիական պրոցեսներ: Անցյալ տարի Սովետական Միությունում արտադրվեց էլեկտրաէներգիա՝ 1.038 միլիարդ կիլովատ-ժամ, քարածուխ՝ ավելի քան 700 մլն, նավթ՝ 491 մլն, պողպատ՝ 141 մլն, երկաթահանքաքար՝ ավելի քան 230 մլն տոննա, մետաղահատ հաստոցներ՝ 232 հազար հատ, կաշվե կոշիկներ՝ մոտ 700 մլն զույգ: Հնգամյակում սպառման առարկաների արտադրությունն աճեց 37 տոկոսով, այդ թվում՝ կուլտուր-կենցաղային նշանակության և տնտեսական ապրանքներինը՝ 60 տոկոսով: Ընդլայնվեց ապրանքների տեսականին ու բարելավվեց որակը: Չնայած խիստ անբարենպաստ կլիմայական պայմաններին, գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացավ 13 տոկոսով: Ներկայումս Սովետական Միությունը առաջին տեղն է գրավում նավթի, քարածխի, պողպատի, երկաթահանքաքարի, ցեմենտի, հանքային պարարտանյութերի, շաքարավազի, կաշվե կոշիկի, գործվածքեղենի և մի շարք այլ արտադրատեսակների արտադրությամբ: Այսպիսին է զարգացած սոցիալիստական հասարակարգի հզորությունը, այսպիսին են սովետական մարդկանց մեծագործությունների մասշտաբները: Այս ամենը հաստատուն բազիս հանդիսացան՝ հաջողությամբ լուծելու սոցիալ-տնտեսական այն խնդիրները, որ առաջադրել էր ՍՄԿԿ XXIV համագումարը: Եվ իրոք, իններորդ հնգամյակը կարևոր փուլ հանդիսացավ աշխատավորության բարեկեցության հետագա բարձրացման համար:*

*Ժողովրդի բարեկեցության բարձրացումը ցայտուն կերպով դրսևորում է ազգային եկամտի աճն ու բաշխումը: Իններորդ հնգամյակում, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ՍՍՀՄ ազգային եկամուտն ավելացավ 34 տոկոսով: Այդ եկամտի 75 տոկոսը հատկացվեց սպառման, իսկ մնացածը կուտակման ֆոնդերին: «Եթե ընթացիկ սպառման ֆոնդի հետ մեկտեղ հաշվի առնենք նաև կուտակման այն ռեսուրսները,— ասում է Ա. Ն. Կոսիգինը,— որոնք հատկացվեցին բնակարանների, դպրոցների, հիվանդանոցների, կուլտուր-լուսավորական հիմնարկների, սպորտային կառույցվածքների, բնակչության կոմունալ և կենցաղային սպասարկման ձեռնարկությունների շինարարությանը, ապա ազգային եկամտի ավելի քան 80 տոկոսը օգտագործվել է անմիջականորեն ժողովրդի բարեկեցության նպատակներով»* (ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները. *էջ 9): Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման նոր միջոցառումների համար*



*պետության կատարած ծախսերը անցած հնգամյակում 1,7 անգամ ավելի էին, քան նախորդում: Ազգային եկամտի արդարացի բաշխման շնորհիվ մեր երկրում հանրային արտադրությամբ զբաղվող բոլոր մարդիկ վարձատրվում են ըստ աշխատանքի և օգտվում զարգացած սոցիալիզմի բարիքներից:*

*Ազգային եկամտի աճը բարենպաստ ներգործություն ունեցավ արտադրության և սպասարկման ոլորտում աշխատողների վաստակի ավելացման վրա: Հինգ տարում բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը հասավ 146 ռուբլու, իսկ հանրային ֆոնդից տրվող վճարումների և արտոնությունների հետ՝ 198 ռուբլու: Նվազագույն աշխատավարձի, նյութական արտադրության ճյուղերի բանվորների ու ծառայողների միջակ վարձատրվող կատեգորիաների տարիֆային դրույքների ու ռոճիկների բարձրացման և այլ միջոցառումների իրականացման շնորհիվ ավելացվել է ավելի քան 75 մլն մարդու աշխատանքային վարձատրությունը: 1975 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, ընտանիքի մեկ անդամի հաշվով ամսական հարյուր ռուբլի և ավելի եկամուտ ունեցողների թիվն աճել է ութուկես անգամ: Կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը հնգամյակում բարձրացել է 25 տոկոսով: Անցած հնգամյակում սոցիալական ծրագրի իրականացման համար ծախսված են այնքան միջոցներ, որքան անցած երկու հնգամյակում՝ միասին վերցրած:*

*Սոցիալիզմի ամենամեծ նվաճումներից մեկն այն է, որ սովետական մարդը վստահությամբ է նայում ապագային, նրան չի սպառնում գործազրկության վտանգը: 1970 թվականին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ բանվորների ու ծառայողների միջին տարեկան թիվը կազմել է 90,2 մլն մարդ, 1975 թվականին՝ 102,2 մլն:*

*Սովետական երկրի ընդհանուր բարգավաճման հետ, որպես նրա բաղկացուցիչ մաս, մեծ նվաճումների է հասել նաև մեր հանրապետությունը: Հնգամյակում բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձն ավելացել է 12,8 տոկոսով, իսկ կոլտնտեսականների վարձատրությունը հանրային արտադրությունից՝ 18,4 տոկոսով:*

*Կոմունիստական կուսակցությունը վիթխարի կարևորություն է տալիս բնակարանային շինարարության ծավալմանը: Սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման համար կենսական նշանակություն ունեցող այդ պրոբլեմի լուծմանը պետությունը հատկացնում է ֆինանսական ու նյութական հսկայական միջոցներ: Սովետական Միության բնակարանային շինարարության վիթխարի մասշտաբները հայտնի են ամենքին: Մեր մոլորակի վրա չկա մի այլ երկիր, ուր այնքան բնակարան կառուցվի, ինչքան մեր երկրում: Յուրաքանչյուր տարի մեջ մոտ կառուցվում է ավելի քան 100 մլն քառակուսի մետր բնակելի տարածություն: Միայն անցած հնգամյակում 56 մլն սովետական քաղաքացիներ բարելավեցին իրենց բնակարանային պայմանները: Այդ ժամանակաշրջանում բնակարանային շինարարության խոշոր ծրագիր իրականացվեց նաև Սովետական Հայաստանում: Ֆինանսական բոլոր աղբյուրների հաշվին կառուցվեց և շահագործման հանձնվեց 6,5 մլն քառակուսի մետր բնակելի ընդհանուր տարածություն, կամ նոր բնակարաններ ստացան ու իրենց բնակարանային պայմանները բարելավեցին մոտ 700 հազար մարդ:*

*Ելնելով բանվորների ու ծառայողների շահերից, սովետական պետությունը պահպանում է տասնյակ տարիներ առաջ սահմանված բնակարանային վարձի նորմաները: Իսկ այդ հնարավորություն է ընձեռում բանվորներին ու ծառայողներին ընտանեկան բյուջեից լրացուցիչ գումարներ հատկացնել իրենց նյութական ու կուլտուրական կարիքների բավարարմանը: Սովետական Միությունում, ինչպես այդ մասին Մոսկվայի «Զիլ» ավտոգործարանի բանվոր-ծառայողների միտինգում արտասանած ճառում նշեց Լ. Ի. Բրեժնևը, 1928 թվականից սկսած բնակարանային վարձի նորմաները չեն փոխվել, թեև այդ ժամանակամիջոցում բանվորների և ծառայողների աշխատավարձն ավելացել է մի քանի անգամ: Քանի որ բնակարանային վարձը չի ծածկում այդ նպատակի համար կատարվող ծախսերի մեկ երրորդը, պետությունն ամեն տարի մոտ*

մաններում քաղաքների և մյուս բնակավայրերի կառուցապատման համար զգացվում է տերիտորիայի խիստ պակաս։ Այդ պատճառով էլ նախատեսվում է զարկ տալ բարձրահարկ շենքերի կառուցմանը, որոնց տեսակարար կշիռը բնակարանային շինարարության ամբողջ ծավալի մեջ կհասնի 70 տոկոսի, ընդ որում անընդհատ կբարելավվեն բնակարանների որակը, դրանց հարմարավետությունը, հատակագծումն ու հարդարանքը, ավելի կմեծացվեն յուրաքանչյուր մարդուն ընկնող բնակտարածության միջին նորմանները, ավելի ընդարձակ կլինեն թե՛ սենյակները, թե՛ տնտեսական և օժանդակ հարմարությունները։

ՍՄԿԿ XXV համագումարում հաստատված՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների համաձայն հնգամյակի տարիներին կշարունակվի պարենային և ոչ պարենային հիմնական ապրանքների պետական մանրածախ գների կայունությունն ապահովելու գիծը։ Կիջեցվեն ապրանքների առանձին տեսակների գները՝ անհրաժեշտ պայմանների ստեղծման և ապրանքային ռեսուրսների կուտակման համեմատ։ Կապահովվի բնակչության սննդի բաղադրության հետագա բարելավումը առավել սննդարար մթերքների՝ մսեղենի, կաթնեղենի, բանջարեղենի, մրգի և այլ մթերքների սպառման աճի հաշվին։ Է՛լ ավելի կընդլայնվի և կնորացվի ապրանքների տեսականին, կբարձրացվի դրանց որակը, կավելացվի բնակչության շրջանում մեծ պահանջարկ ունեցող նորաձև ապրանքների թողարկումը և իրացումը, հատկապես արագ կաճի բնակչության ապահովվածությունը տևական օգտագործման առարկաներով։

Նոր հնգամյակում, երկրի գիտատեխնիկական առաջընթացի պահանջները բավարարելու, ժողովրդական տնտեսությունը բարձրորակ մասնագիտական կադրերով ապահովելու նպատակով, զգալիորեն կընդարձակվի ժողովրդական կրթության ցանցը։ Ավելի մեծ ուշադրություն կնվիրվի երիտասարդության պրոֆեսիոնալ կողմնորոշմանը, կբարձրացվի միջնակարգ դպրոցներում ուսումնա-դաստիարակչական աշխատանքի մակարդակը։ Կկառուցվեն առնվազն 7 մլն աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ՝ մեծ մասամբ գյուղերում։

Տասներորդ հնգամյակում զգալիորեն կաճի սոցիալիստական գործոնների դերը արտադրության զարգացման և նրա արդյունավետության բարձրացման ասպարեզում։ Գործնական միջոցներ կձեռնարկվեն աշխատավորների արտադրական պայմանների բարելավման, նրանց ստեղծագործական նախաձեռնության ծավալման, սակավ որակավորում ունեցող և ծանր ֆիզիկական աշխատանքի համակողմանի կրճատման ուղղությամբ։ Ավելի լայնորեն կօգտագործվեն գիտության ու տեխնիկայի նվաճումները՝ բարելավելու մարդկանց աշխատանքի պայմանները և աշխատանքի պաշտպանությունը։

«Առաջադրելով սոցիալական լայն ծրագիր,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— կուսակցությունը ելնում է այն բանից, որ դրա կատարումը կնպաստի բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի աշխատանքային ակտիվության բարձրացմանը, նոր խթան կծառայի յուրաքանչյուրի է՛լ ավելի լավ աշխատանքի համար... Չէ՞ որ հենց արտադրության աճը, արտադրանքի թողարկման ավելացումն ու նրա որակի բարելավումն են ժողովրդի բարեկեցության բարձրացման գլխավոր և վճռական պայմանը» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 68)։

# ԱՐԺՈՒՅԹԱՅԻՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՈՒՄՆ ԱՐԴԻ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Հ. Գ. ՇԱՔԱՐՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀՈԳԵՎՈՐ ԱՐԺՈՒՅԹՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՌՈՒՄՈՎ ներկա դարաշրջանը համարվում է գիտության դար։ Հիրավի, ներկայումս մարդկային գործունեության ոչ մի բնագավառ այնչափ չի զբաղեցնում մարդկանց մտքերը, որքան գիտությունը։ Ամենից առաջ գիտատեխնիկական առաջընթացի հիմքի վրա են ծնունդ առնում ինչպես ամենալուսավոր, այնպես էլ ամենամռայլ կանխատեսումները մարդկության ապագայի վերաբերյալ։ Գիտությունը կլանում է հասարակության համարյա ողջ մտավոր կարողությունը, այն միտում ունի բոլոր չափանիշներով դառնալու հասարակական կյանքի ամենաազդեցիկ ոլորտներից մեկը։ Դրա թափն իր արագությամբ գերազանցում է հասարակական վերարտադրության ցանկացած բնագավառը։ ՅՈՒՆԵՍԿՕ-ի տվյալներով, աշխարհի բնակչության միջին աճը տարեկան երկու տոկոս է, մինչդեռ գիտության հնարավորություններն աճում են ավելի քան 20 տոկոսով։ Միջին հաշվով յուրաքանչյուր տասը տարում կրկնապատկվում է գիտնականների թիվը, իսկ 10—15 տարում՝ գիտական ինֆորմացիան։ Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր 10—15 տարում կատարվում են նույնքան հայտնագործություններ, որքան եղել են գիտության զարգացման ողջ նախորդ պատմության ընթացքում։ Այսօր գիտնականները երկրագնդի բնակչության նույնիսկ մեկ տոկոսը չեն կազմում, մինչդեռ ենթադրվում է, որ ոչ հեռավոր ապագայում մարդկության 20 տոկոսը ուղղակի, թե անուղղակի կերպով զբաղված կլինի գիտության ճակատում։

Ֆուտուրոլոգները ենթադրում են գիտության հնարավոր սատուրացիան, այսինքն՝ դրա զարգացման հագեցումը կամ հնարավորությունների սպառումը։ Վերջինս կապվում է իր իսկ ինֆորմացիայի հսկայական աճի, դրա յուրացման դժվարությունների, ուսուցման պրոցեսների երկարաձգման, խիստ նեղ մասնագիտացման անխուսափելի բացասական հետևանքների և նման այլ գործոնների հետ։

Իհարկե, կարելի է վկայակոչել նաև սատուրացիայի հնարավորության դեմ ուղղված հակափաստարկներ։ Անկախ գիտության ապագա ճակատագրից, այսօր արդեն այն ակնհայտորեն բացահայտել է իր «էքսպանսիոնիստական» ոգին՝ անջնջելի հետք թողնելով մարդկության պատմության վրա։ Հիշենք Հիրոսիման ու Նագասակին՝ այդ ավելի քան շոշափելի ապացույցները միլիտարիզմի լեզվով, կամ մտածողության չափազանց մարդկային ու խորհրդավոր լինելու վերաբերյալ դարերով ամրապնդված համոզմունքի կործանումը կիբեռնետիկական սարքերի տրամաբանական նմանակներում։ Միջավայրի փոխակերպումից գիտությունն ընդհուպ մոտեցել է իր իսկ մարդու փոխակերպմանը։ Մարդն արդեն ունակ է ղեկավարելու իր սեփական բնությունը, բնածին ու ձեռքբերովի հատկությունների փոխհարաբերությունը։

Գիտության դերի ու նշանակության նման աճը հասցրել է այն բանին, որ

որոշ տեսաբաններ նույնիսկ հակված են գիտական առաջընթացում փնտրելու հասարակական զարգացման վճռական տարրը: Էլ չենք խոսում հասարակական կյանքի դետերմինացիայում նյութական բարիքներ արտադրողների վճռական գործոն լինելու վերաբերյալ մարքսիստական դրույթի վերանայման ռևիզիոնիստական փորձերի մասին, փորձեր, որոնց համաձայն գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում գիտնականները, մտավորականներն են հասարակական զարգացման իսկական սուբյեկտը:

Չխախտելով հասարակության զարգացման ընդհանուր կառուցվածքը՝ գիտությունը և նրա առարկայացումը տեխնիկայում հարուցում են սոցիալական, գաղափարական, կենսաբանական, գեղագիտական, բարոյական և այլ կարգի ոչ քիչ պրոբլեմներ. գիտությունը ստեղծում է մարդու համար ո՛չ միայն նոր բարիքներ, այլև նոր դժվարություններ, ծնում ինչպես նոր հույսեր, այնպես էլ նոր հոգսեր: Գիտական յուրաքանչյուր նոր խոշոր հայտնագործության և գլխավորապես դրա կոնկրետ իրականացման հետ մեկտեղ, առավել ակնհայտ է դառնում իր իսկ գիտության զարգացման ներքին հակասությունը, հետևապես և այն փաստի գիտակցումը, որ գիտելիքը ո՛չ միայն իմացական, այլև սոցիալական ու բարոյական արժեք է: Այս հանգամանքի շնորհիվ ժամանակակից հայտությունն է գտնում գիտության կազմակերպման, զարգացման և հատկատարբեր սիստեմների հակամարտությունն իր անմիջական ու ակնբախ արտահայտությունն է գտնում գիտության կազմակերպման, զարգացման և հատկապես օգտագործման բնագավառում: Գիտելիքների արտադրությունն ու սպառումը, որպես մարդկային ստեղծագործական ակտիվության ամենաակնառու արտահայտություն, սոցիալական հակամարտ սիստեմների էության դրսևորման ամենատիպիկ բնագավառներից են:

Պայքարի այդ նոր թատերաբեմը բավականաչափ կազմավորվել է, հատկապես, մեր դարի 40-ական թվականներին՝ կապված մասամբ երկրորդ համաշխարհային պատերազմով պայմանավորված գիտական մի շարք հայտնագործությունների ու դրանք տեխնիկայում առարկայացնելու, ինչպես և սոցիալական հակասությունների ծայրաստիճան սրման հետ:

Գերմանիայում ֆաշիստական ռեժիմի հաստատման և ռասիստական քաղաքականության հետևանքով իր ժամանակին այնտեղից ԱՄՆ գաղթեցին նորագույն ֆիզիկայի՝ դարաշրջանի գիտության առաջատար բնագավառի մի շարք ներկայացուցիչներ՝ Էյնշտեյնը, Ֆերմին, Բորը և ուրիշներ, որոնք և ստեղծեցին ազդեցիկ դպրոցներ ու գիտական կենտրոններ: Հենց նման դպրոցների գոյությունը ԱՄՆ-ում և, առաջին հերթին, մրցակցության ու «ուղեղների գնման» օրենքը բավականին կայուն դարձրին այդ տենդենցը նաև հետպատերազմյան տարիներին: Միայն 1955—1965 թթ. այլ երկրներից (հիմնականում Կանադայից, Անգլիայից ու ԳՖՀ-ից) ԱՄՆ են արտագաղթել շուրջ 53 հազար գիտնական, այդ թվում՝ 30 հազար ֆիզիկոս: Ինչպես նկատել է սովետական նշանավոր գիտնական, ակադեմիկոս Պ. Լ. Կապիցան, դա նշանակում է, որ այդ տարիներին տասը համալսարան, առանց փոխհատուցման, բարձրորակ կադրեր են պատրաստել ԱՄՆ-ի համար: Այժմ ԱՄՆ-ի Ազգային ակադեմիայի անդամների և Նոբելյան մրցանակի դափնեկիրների ավելի քան 17 տոկոսը ծագումով այլ երկրներից է կամ կրթվել է այլ երկրներում: «Ուղեղի ներմուծումը» դարձել է պետական քաղաքականություն կապիտալիզմի այդ միջնաբերդի համար: Եվ առհասարակ արևմտյան աշխարհի սև շուկաներում ամենաթանկ գնահատվող ապրանքը գիտնականի միտքն է: Յուրաքանչյուր երկիր դիմում է օրինական ու անօրինական, բարոյական ու անբարոյական բազմապիսի միջոցների՝ իր ինտելեկտուալ պոտենցիալը բազմապատկելու համար:

Նման իրավիճակում սովետական գիտության առաջնահերթ խնդիրը մարդկային գործունեության այդ վճռական բնագավառում ո՛չ միայն առաջատար դիրք գրավելու կենսական անհրաժեշտությունն էր, այլև, որ ավելի կարևոր էր, սկզբունքորեն նոր ինֆորմացիայի արտադրության, ընկալման և օգտագործման ոլորտներում մարդկային ստեղծագործական կարողության հումանիզացումը: Խոսքը վերաբերում էր համաշխարհային գիտական պրոցեսի վրա սով-



տական գիտության արմատական ազդեցությանը, աշխատավոր ժողովրդի տեսանկյունից գիտության վերաիմաստավորմանը և նրա օգտագործմանը՝ հանուն սոցիալական առաջադիմության:

Ջունգլիների օրենքներին, գաղտնագրությանն ու մասնավոր ձեռներեցության տարրերին հակադրվեցին կոլեկտիվիզմի ոգին, պլանավորման սկզբունքը և հուսալի տեսական հիմքը՝ ինչպես իր իսկ գիտության շրջանակներում, այնպես էլ ժամանակակից հասարակական կառուցվածքում դրա տեղի ու դերի իմաստավորման բնագավառում: Գիտության միլիտարիզացման տենդենցի և դրա նկատմամբ նեղ-կիրառական մոտեցման փոխարեն խնդիր դրվեց օգտագործել գիտական արտադրանքը հասարակական կյանքի ամենավճռական՝ նյութական բարիքների արտադրության ոլորտում, ինչպես նաև ապահովել ժամանակակից իմացության բոլոր բնագավառների հավասարաչափ զարգացումը:

Ճապոնական գիտնականների հաշվումների համաձայն, արդեն 50-ական թվականների կեսերին, գիտելիքների արտադրության բնագավառում Սովետական Միությունը դարձել է աշխարհում առաջատար երկիրը: Ըստ ՅՈՒՆԵՍԿՕ-ի տվյալների, վերջին կես դարում գիտնականների թիվը կրկնապատկվում է՝ Արևմտյան Եվրոպայում յուրաքանչյուր 15, ԱՄՆ-ում՝ 10, ՍՍՀՄ-ում՝ 6—7 տարում: Աշխարհի բնակչության միայն 8 տոկոսն է ապրում ՍՍՀՄ-ում: Մինչդեռ նույն՝ ժամանակակից իրականության մեջ գործող գիտնականների ու ինժեներների 34 տոկոսը սովետական քաղաքացիներ են (մոտ 5 միլիոն): Արևմտյան Եվրոպայում ապրում է աշխարհի բնակչության ինը տոկոսը, իսկ գիտաշխատողների ու ինժեներների՝ ընդամենը 14 տոկոսը:

ԳԻՏՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ու գիտելիքների արտադրության, առավել ևս դրանց ընկալման ու պրակտիկ օգտագործման պրոբլեմը ո՛չ միայն ու ո՛չ այնքան իրենց իսկ գիտնականների, նրանց բարոյական, նույնիսկ կոլեկտիվ պատասխանատվության խնդիրն է: Վերջին հաշվով այդ ամենը վերաբերում է հասարակության սոցիալական կառուցվածքին: Իզուր չի ասված, թե քաղաքական գործիչներն են հայտնաբերել գիտությունը: Հենց բուրժուական քաղաքագետների ձեռքին գործիք դարձած այդ գիտությունից է ծնվել այն տեսությունը, որի համաձայն քաղաքակրթության զարգացումը հակադարձ է հասարակության սոցիալ-բարոյական պրոբլեմների լուծմանը: Նոր ձևով ներկայացան «երջանիկ ապագայի» կանխատեսումը, կամ «արժեքազրկման» և բարոյականության «արժեքազրկման» կամ ... 

Կիբորգը ինչ-որ միջանկյալ երևույթ է մարդու և ռոբոտի միջև. դա մարդն է, որի նուրբ օրգանները փոխարինված են համապատասխան արհեստական կառուցվածքներով: Այդ ենթադրվող, բայց ավելի հավանական (քան ռոբոտը) «ապագայի մարդը» արհեստական սրտով ու այլ օրգաններով (ենթադրվում է, որ այնուամենայնիվ ուղեղը կմնա մարդկային) կարող է ապրել մինչև 1000 և ավելի տարիներ: Կարծիք է հայտնվում նույնիսկ, որ կիբորգների դարաշրջանն արդեն սկսվել է. արհեստական ատամներ, վերջավորություններ, աչքի եղջրաթաղանթ, արհեստական սիրտ ու երիկամներ... Եվ այս ամենը համարվում է ավելի քան բարի, «հումանիստական միջամտություն» մարդու «ներքին գործերում»: Բայց արդյո՞ք նույնքան հումանիստական է հնչում կիսամարդու-կիսամեքենայի հասարակությունը. ինչպիսի՞ն կլինի նրա բարոյական-էմոցիոնալ մթնոլորտը, սոցիալական ինստիտուտները, ընտանիքը կհանդուրժե՞ն արդյոք նոր սոցիալական սուբյեկտին երկակի բնությամբ. ի՞նչ կարելի է սպասել թեկուզ նույնիսկ ոսկե (եթե ոչ նեյլոնե) սրտից՝ սե՞ր, ատելությո՞ւն, գուցե ամենասարսափելին՝ անտարբերությո՞ւնը: Հումանիստակա՞ն է արդյոք այդ ամենը:

...Անգլիացի երիտասարդ բիոքիմիկոսը մի քանի մկների «դաստիարակել» է մթությունից վախենալու ոգով: Դա դպրոցական դասագրքերից հայտնի սովորական պայմանական ռեֆլեքս է: Բայց բիոքիմիկոսին հաջողվել է գլխուղեղի համապատասխան կենտրոնում գտնել այն ուղեղային նյութը, որը կազմավորվել է պայմանական ռեֆլեքսի մշակման հետևանքով: Ավելին՝ նրան հաջողվել է հատուկ հարմարանքներով տեղափոխել այդ նյութը այլ՝ «չդաստիարակված» մկների ուղեղային համապատասխան կենտրոնները և ստանալ նույն արդյունքը՝ վախը մթությունից: Եվ ահա երիտասարդ գիտնականին սպասվում էր միջազգային գիտաժողովներից մեկում զեկուցել իր հայտնագործության մասին: Բայց նրա հաղորդումը շատ կարճ էր և բոլորովին էլ ոչ մկների մասին: Նա հրապարակորեն հրաժարվում է այդ բնագավառում իր ուսումնասիրություններից այն պատճառաբանությամբ, թե ժամանակակից հասարակական կառուցվածքի պայմաններում նման հայտնագործությունը կարող է դառնալ մարդկության համար մի նոր համաշխարհային ողբերգության սկիզբ...

Հեղինակը գտնում է, որ իր գյուտը կարող է հնարավորություն ընձեռել բռնապետներին հատուկ լաբորատորիաներում ստեղծել նման ինչ-որ բան, կամ, ասենք, հավիտենական հպատակություն հաստատող որևէ նյութ, որպեսզի այն սրսկվի տվյալ պետության ազատ քաղաքացիների համապատասխան կենտրոնները*:

Եվ այսպես անգլիացի բիոքիմիկոսը հրաժարվում է իր հայտնագործությունից, գիտական աշխարհում արդեն նվաճած իր դիրքից և նվիրվում սոցիալական կառուցվածքի ուսումնասիրությանը, որը, նրա համոզմունքով, բավականաչափ ետ է մնում բնագիտության զարգացումից:

Այն, որ մարդու մասին գիտությունը ակնհայտորեն ետ է մնում բնական գիտությունների առաջընթացից, հատկապես հիշյալ հետազոտողի հայրենիքում և վերջինիս մոտակայքում, այդ, իհարկե, ճշմարիտ է: Սակայն երիտասարդ ռոմանտիկին անհայտ է մնում այն նույնքան ակնհայտ ճշմարտությունը, որ գիտության անհամաչափ զարգացումը և առավել ևս մարդկային ստեղծագործության օգտագործումն իր իսկ մարդու դեմ կամ գիտության հումանիզացիան— այդ ամենը ոչ միայն և ոչ այնքան գիտության, տեսության, բարոյականության, քաղաքականության և այլ նույնքան ածանցյալ սոցիալական երևույթների պրոբլեմ է, որքան պրակտիկայի, հասարակության սոցիալական կառուցվածքի պրոբլեմ, անմիջական դրսևորում այն փաստի, որ տվյալ համակարգում գործում են սոցիալական հակադիր խավեր և նույնքան հակադիր տնտեսական հետաքրքրություններ: Ավելի քան 100 տարի առաջ բրիտանական

*) Միթե հենց նույն էվոլյուցիան չի ապրել ժամանակակից գիտության մի այնպիսի նվաճում, ինչպիսին է հոգեվիրահատությունը, որը մասնավորապես մեր օրերին ԱՄՆ-ում հոգեկան արատների «ամպուտացիայի» միջոցից վեր է ածվել գոյություն ունեցող սոցիալական սիստեմի հակառակորդներին անդամատելու, «լոյալ դարձնելու» գործիքի:



թանգարանում Կ. Մարքսն ապացուցել է, որ մարդկային հանճարի օգտագործումը իր իսկ մարդու դեմ— դա անպետք հասարակական հարաբերությունների նույնքան անպետք արտադրանքն է: Հենց այդ հասարակարգում է, որ բանվորի աշխատանքը շահագործումից ու օտարացումից բարձրացել, հասել է գիտնականի ստեղծագործական մտածողության շահագործմանն ու օտարացմանը, գիտնական, որը զրկված է իր ստեղծագործությունների հրապարակման, կոլեգաների հետ շփման և առհասարակ որպես այդպիսին հայտնի լինելու հնարավորությունից: Նման գաղտնագրված մտածողը ոչ թե իր ստեղծագործության տերն է, այլ պարզապես դրա ստեղծման միջոցը, եթե ոչ ստրուկը: Ժամանակակից սոցիալական չարիքների, պատերազմների, բարոյական այլասերման աղբյուր այդ հասարակությունը մարդկային հանճարի լավագույն նմուշներն ուղղում է, առաջին հերթին, իր իսկ մարդու դեմ: Հենց այդ հասարակարգի՝ կապիտալիզմի հետևանքով է, որ մարդկությունը արդի փուլում ավելի մեծ հնարավորություններ է կուտակել ինքնաոչնչացման, քան ինքնահաստատման համար:

Այս ամենը նշանակում է, որ գիտության հումանիզացիան, գիտական ստեղծագործության ռացիոնալ օգտագործումը և, առհասարակ, գաղափարական ու սոցիալ-քաղաքական առումով գիտական հայտնագործությունների անցավ ընկալումը, դրանց ստվերոտ կողմերից խուսափելը հասարակության սոցիալական կառուցվածքի արմատական վերակառուցման պրոբլեմն է, սոցիալ-տնտեսական այն հիմքի ոչնչացման պրոբլեմը, որը մարդուն ուղղում է մարդու դեմ՝ ինչ ձևով էլ որ վերջինս արտահայտվի— սոցիալ-դասակարգային, գաղափարա-բարոյական կամ ռասայական-ազգային: Այդ հիմքի վրա է հանում նաև մարդուն իրեն իսկ հակադրումը, մարդու, տվյալ դեպքում գիտական ստեղծագործողի ինքնաօտարումը:

Սովետական գիտության վճռական ազդեցությունը ժամանակակից գիտական պրոցեսի զարգացման վրա արտահայտվում է, ամենից առաջ, մարդկային ստեղծագործության հումանիստական օգտագործման առումով:

Հասարակության կոմունիստական վերակառուցումը միաժամանակ նշանակում է իր իսկ գիտության ու ժամանակակից հասարակության ամենամեծ հարստության՝ ստեղծագործական մտածողության ազատագրումը շահագործումից ու օտարացումից, գիտական ստեղծագործության հումանիստական էության փրկությունը:

# ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Ֆ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԱՄԽ-ի քարտուղար

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, մշակելով տասներորդ հնգամյակում մեր երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացի մեծ ծրագիրը, դրա իրականացման գործում կարևորեց նաև արհմիությունների վճռական դերը: «Մեր հասարակության կյանքում,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— արհմիություններին մեծ տեղ է հատկացվում, և դա նրանց շատ բան է պարտավորեցնում: Արհմիությունների աշխատանքը պետք է այնպես կազմակերպված լինի, որ ավելի լրիվ համապատասխանի նրանց իրավունքներին և նրանց պատասխանատվության աստիճանին» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., էջ 138):

Արհմիությունների կարևորագույն խնդիրներից մեկը, ինչպես միշտ, գործուն մասնակցությունն է աշխատանքային կոլեկտիվների սոցիալիստական մրցության կազմակերպմանը: Կուսակցության XXV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագիրն իրականացնելու, նոր հնգամյակի առաջադրանքները կատարելու հաստատակամ ձգտումով են տոգորված նաև Հայաստանի արհմիությունները: Մեր արհմիութենական կազմակերպություններն իրենց պարտքն են համարում աշխատավորական զանգվածներին լայնորեն ներգրավել սոցմրցության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման մեջ, օգնել կուսկազմակերպություններին ձեռնարկությունների ու տնտեսությունների ղեկավարներին՝ տասներորդ հնգամյակը բարձր արդյունավետության ու որակի հնգամյակ դարձնելու համար: Հանրապետության արհմիութենական ղեկավար մարմիններն ու տեղական կոմիտեները ակտիվորեն մասնակցում են սոցիալիստական մրցության կազմակերպմանն ու ծավալմանն առնչվող արմատական հարցերի քննարկմանը, էկոնոմիկայի և սոցիալ-կուլտուրական կյանքի զարգացման հեռանկարների կանխորոշմանը: Արհմիությունների տեղական կոմիտեները, տնտեսական ղեկավարների և կուսկազմակերպությունների հետ միասին, մշակում են սոցմրցության պայմանները, որոշում մրցության արդյունքների ամփոփման, հաղթողների նյութական ու բարոյական խրախուսման ձևերն ու մեթոդները:

Վերջին տարիներին սոցիալիստական մրցության կազմակերպման լավ



փորձ է կուտակվել, բազմազան են դարձել մրցության ու մրցույթների ձևերը: Եվ ամեն կերպ ջանում են ընդհանրացնել ու տարածել սոցմրցության ծավալման բնագավառում կուտակված ուսանելի փորձը, դրանով իսկ բարձրացնել մրցության արդյունավետությունը, այն դարձնել մարդկանց աշխատանքային դաստիարակության, նրանց ուժերի մոբիլիզացման լավագույն միջոց: ՀԱՄԽ-ի նախագահությունը գործարար մթնոլորտում քննարկել է սոցիալիստական մըրցության կազմակերպման բնագավառում Քանաքեռի ալյումինի գործարանի արհմիութենական կազմակերպության փորձը, հավանություն տվել դրան և հանձնարարել հանրապետության արհմիութենական կոմիտեներին՝ լայնորեն արմատավորել այն: Այս ձեռնարկությունում, իրոք, ուսանելի շատ բան կա: Այստեղ լայնորեն կիրառվում են կոլեկտիվ և անհատական մրցության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման, ըստ մասնագիտության և մրցույթների այլ առաջավոր ձևեր ու մեթոդներ, ճիշտ են զուգակցվում մրցողների նյութական ու բարոյական խրախուսման միջոցները: Մրցության կազմակերպմամբ ու ծավալմամբ մշտապես զբաղվում են ո՛չ միայն արտադրամասային արհկոմները, այլև արհմիութենական խմբերի կազմակերպիչները: Նրանք ամեն ամիս ամփոփում են սոցպարտավորությունների կատարման արդյունքները, քննարկում արտադրանքի որակի, աշխատանքային կարգապահության ամրապնդման, խնայողության ռեժիմի պահպանման և արտադրության արդյունավետության բարձրացմանն առնչվող այլ խնդիրներ: Մրցության արդյունքներն ամփոփելիս արհմիութենական արտադրամասային կոմիտեներն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում դեռևս չլուծված հարցերի կարգավորմանն ու թերությունների վերացմանը, հետևողականորեն կիրառում սոցմրցության հրապարակայնության լենինյան սկըզբունքը: Այստեղ այդ նպատակին են ծառայեցվում կոլեկտիվի ժողովները, ցուցանիշների տախտակները, կուլտուրայի պալատում կազմակերպվող շատ միջոցառումներ, «Մետալուրգ» բազմատիրաժ թերթն ու պատի թերթերը, գործարանային ռադիոհանգույցը և այլն: Մրցության արդյունավետ կազմակերպման շնորհիվ ձեռնարկության կոլեկտիվն իններորդ հնգամյակում տասնհինգ եռամսյակ հաղթող է ճանաչվել համամիութենական սոցմրցության մեջ, բազմիցս արժանացել հանրապետական մրցանակների: Գործարանը հնգամյա պլանից ավելի տվել է մի քանի տասնյակ միլիոն ռուբլու արտադրանք, շահույթների հինգ տարվա պլանը գերակատարել 7 մլն ռուբլով, զգալիորեն բարձրացրել աշխատանքի արտադրողականությունը: Գոհացուցիչ են նաև նոր հնգամյակի անցած ամիսների արդյունքները: Բոլոր բանվորներն ընդգրկված են սոցմրցության մեջ, տասնյակ բրիգադներ և հարյուրավոր անհատներ պայքարում են կոմունիստականի բարձր կոչմանն արժանանալու համար: Ձեռնարկությունն ամեն ամիս կատարում է իր ֆինանսա-տնտեսական պլանները:

Արհմիութենական կազմակերպությունները պարտավոր են ամեն կերպ նպաստել սոցմրցության գործարարությանն ու արդյունավետության բարձրացմանը, արմատավորել մրցության կազմակերպման լավագույն փորձը: «Մրցությունը,— ինչպես ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— խոր ազդեցություն է գործում տնտեսական պրակտիկայի վրա, երկրի հասարակական-քաղաքական կյանքի վրա, բարոյական մթնոլորտի վրա» (Նույն տեղը, էջ 126): Մրցության արդյունավետության բարձրացման ուշագրավ օրինակներ կարելի է հանդիպել շատ ձեռնարկություններում: «Հայէլեկտրալույս» միավորման կոլեկտիվը որոշել է յուրաքանչյուր աշխատողի համար բացել արդյունավետության անձնական հաշիվ: Սոցիալիստական պարտավորությունների ընդունման հաջող և ընդօրինակման արժանի ձև է մշակված Լենինականի տեքստիլ կոմբինատում: Աշխատանքի արտադրողականության բարձրացման, հաստոցների հզորության լավագույն օգտագործման և գերազանց որակի արտադրանքի թողարկման նպատակով յուրաքանչյուր բանվոր կազմել է կոմպլեքսային պարտավորություն— պլան, որտեղ կոնկրետ նշված են առանձնած պարտավորությունները և դրանց կատարումն ապահովող միջոցառումները՝ ուղղված աշխատաժամանակի կրճատմանը, աշխատանքային

# ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՃԸ ԵՎ ՄԻԳՐԱՑԻՈՆ ՊՐՈՑԵՍՆԵՐԻ ԿԱՐԳԱՎՈՐՈՒՄԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ-ՈՒՄ

**Բ. Ս. ՄԻՐՋՈՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու, դոցենտ

*ԱՐԴԻ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ հեղափոխությունը, հարուցելով բնակչության մեծ տեղաշարժ, միաժամանակ պահանջում է կարգավորել ու կառավարել դեմոգրաֆիական ու միգրացիոն պրոցեսները: Այդ դժվարին պրոբլեմի լուծումն առանձնապես կենսական նշանակություն ունի արագ զարգացող, փոքր, խիտ և խիստ անհամաչափ բնակեցված մեր հանրապետության համար:*

*Սույն հոդվածում կփորձենք համառոտակի ցույց տալ հանրապետության բնակչության աճի ու միգրացիոն պրոցեսների առանձնահատկությունները, դրանց կարգավորման ուղիները:*

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐԿԱՅԻՍ տերիտորիայում (29,8 հազար քառ. կմ) 1920 թ. բնակվում էր 720 հազար մարդ (1913 թ. 1 մլն-ի դիմաց): Վերածնված ժողովուրդն ավելի քան կես դար հետո գրեթե քառապատկվել է: Դա հազվադեպ երևույթ է ժողովուրդների պատմության մեջ:*

*Հանրապետությունը բնակչության աճի երկու հորդառատ աղբյուր է ունեցել՝ բնական և մեխանիկական: Վիճակագրական տվյալները վկայում են, թե ծննդի ու մահացության ինչպիսի փոխհարաբերությամբ է ընթացել բնակչության բնական աճը տարբեր տասնամյակներում:*

*Աղյուսակ 1*

ՀՍՍՀ բնակչության ծնունդը, մահացությունը և բնական աճը
(1000 բնակչի հաշվով)

| | *Ծնվածների թիվը* | *Մահացածների թիվը* | *Բնական աճը* |
|---|---|---|---|
| *1926 թ.* | *54,2* | *17,3* | *36,9* |
| *1940 թ.* | *41,2* | *13,8* | *27,4* |
| *1950 թ.* | *32,1* | *8,5* | *23,6* |
| *1960 թ.* | *40,1* | *6,8* | *33,3* |
| *1970 թ.* | *22,1* | *5,1* | *17* |
| *1974 թ.* | *21,9* | *5,2* | *16,7* |

*Շուրջ երեք տասնամյակ (20, 30, 50-ական թվականներ) հանրապետությունում պահպանվել է բնակչության բնական աճի չափազանց բարձր մակարդակ. դժվար չէ նկատել, որ վճռական դեր է կատարել մահացության գործակցի խիստ իջեցումը (գրեթե եռակի): Վաթսունական թվականներին ծննդի մակարդակի կտրուկ անկման հետևանքով գրեթե երկու անգամ դանդաղել է բնակչության բնական աճը, իսկ յոթանասունական թվականների սկզբներին նկատվում է բնակչության վերարտադրությունը բնութագրող ցուցանիշների կայունացում:*

*Բնորոշ է նաև, որ 1965 թվականից հետո ծննդի գործակցի իջեցումը տեղի է ունեցել գերազանցապես գյուղի հաշվին (1.000 բնակչի հաշվով 1965 թ. քաղաքատիպ բնակավայրերում ծնվել են 23,9, գյուղական վայրերում՝ 34,6, իսկ 1974 թ. համապատասխանաբար՝ 21,7 և 22,4 երեխա):*

*Ծննդի մակարդակը պայմանավորվում է բազմաթիվ իրարամերժ գործոններով, որոնց քննարկումը պահանջում է հատուկ ուսումնասիրություն: Վերջին 15 տարում նկատելի փոխվել է բնակչության սոցիալական ու սեռա-տարիքային կառուցվածքը, բարձրացել է նրա կուլտուրական ու կրթական մակարդակը, մեծացել քաղաքային բնակչության ու մտավորականության տեսակարար կշիռը, աշխատունակ կանայք գրեթե լրիվ ընդգրկվել են հասարակական արտադրության ոլորտը—գործոններ, որոնք հակադարձ կապի մեջ են ծննդի մակարդակի հետ:*

*Ի դեպ, հանրապետության բնակչության վերարտադրությանը ներկայումս բնորոշ է մահացության ցածր և ծննդի համեմատաբար միջին մակարդակ: Չնայած ծննդի գործակիցը հանրապետությունում վերջին 15 տարում նվազել է ավելի արագ, քան Միությունում (համապատասխանաբար՝ 44 և 30 տոկոս), բնակչության բնական աճը մեզ մոտ գրեթե երկու անգամ մնում է բարձր՝ միջին միութենական ցուցանիշի համեմատությամբ:*

*Հանրապետության բնակչությունն ավելանում է նաև մեխանիկական աճի հաշվին: Սովետական Հայաստանը եղել և մնում է աշխարհասփյուռ հայերի հանգրվանը: Սովետական իշխանության տարիներին արտասահմանյան տարբեր երկրներից հայրենիք է վերադարձել ավելի քան 200 հազար մարդ:*

*Վերջին երկու տասնամյակում հանրապետության բնակչության մեխանիկական աճը հիմնականում տեղի է ունեցել Միության տարբեր վայրերում բնակվող հայերի հաշվին*:*

*Միայն մեխանիկական աճի շնորհիվ հանրապետության բնակչության թիվը 1959 թ. և 1970 թ. մարդահամարների միջև ընկած ժամանակամիջոցում (11 տարում) ավելացել է 8,4 տոկոսով (բնականի հետ միասին՝ 41,3 տոկոսով): Հիշենք, որ նույն ժամանակամիջոցում Միության բնակչությունն աճել է ընդամենը 16, այդ թվում ևվրոպական մասինը՝ 11,2 տոկոսով: Ուշագրավ է, նաև, որ Սովետական Հայաստանում բնակվող մյուս ազգությունների տեսակարար կշիռը գրեթե չի նվազել, չնայած բնակչության ողջ աճի մեջ մեխանիկականի բաժինը դրսից ներհոսքի հաշվին կազմել է 20 տոկոս:*

*Վիճակագրական տվյալները ցույց են տալիս, որ վերջին տարիներին հանրապետության բնակչության մեխանիկական աճն է՛լ ավելի ինտենսիվ բնույթ է կրել: Անցած հինգ տարում (1970—1974 թթ.) բնակչության թիվն ավելացել է մոտ 300 հազարով, որից շուրջ 75 հազարը կամ 25 տոկոսը կազմում է մեխանիկական աճը:*

*1926 թ., Միության միջին ցուցանիշի համեմատությամբ, Հայկական ՍՍՀ-ում բնակեցման խտության տարբերությունը միավոր տարածության վրա կազմում էր 20 մարդ, իսկ կես դար հետո (ներկայիս վիճակով) այն հասնում է 80 մարդու: Բնակչության միջին խտությամբ մեր հանրապետությունը զիջում է միայն Մոլդավական ՍՍՀ-ին: Սակայն պետք է հաշվի առնել, որ խիստ կտրտված մեր լեռնաշխարհի կեսից մի փոքր ավելին է պիտանի բնակեցման և տնտեսական օգտագործման համար:*

*ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՏԵՐԻՏՈՐԻԱՅԻ 40 ՏՈԿՈՍԸ գտնվում է ծովի մակերևույթից 2.000—4.000 մետր բարձրության վրա, կես մասը՝ 1.000—2.000 մետրի վրա և միայն 10 տոկոսը՝ 1.000 մետրից ցածր: Արարատյան արգավանդ*

Տպագրվում է հարցադրման կարգով.— ԽՄԲ.:

*) Այդ մասին մանրամասն տվյալներ են բերված Խ. Ավետիսյանի «Բնակչության միջհանրապետական միգրացիան» հոդվածում (տե՛ս «Լենինյան ուղիով», № 3, 1973, էջ 68—74):

դաշտավայրը կազմում է ամբողջ հողատարածությունների մոտ 10 տոկոսը: Սովետական իշխանության առաջին տարիներին այնտեղ (Երևանի տերիտորիայի հետ միասին) բնակվում էր հանրապետության բնակչության 20, իսկ կես դար հետո՝ մոտ 50 տոկոսը:

Հանրապետության բնակչության տեղաշարժի ուղղությունները ցույց տալու համար դիմենք մարդահամարի տվյալներին:

Հայկական ՍՍՀ տերիտորիան և բնակչությունը

| | տերի-տորիան կմ² | Բնակչության թիվը (հազ. մարդ) | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | 1926 թ. դեկտ. 17 | 1939 թ. հունվ. 17 | 1959 թ. հունվ. 15 | 1970 թ. հունվ. 15 | 1974 թ. հունվ. (գնահատ.) |
| Հայկական ՍՍՀ | 29800*) | 881,3 | 1282,3 | 1763,0 | 2491,9 | 2728,5 |
| տոկոսներով | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 |
| Այդ թվում՝ | | | | | | |
| Լեռնային 28 շրջաններ**) | 24065 | 618,8 | 802,6 | 817,7 | 1033,8 | 1063,7 |
| տոկոսներով | 84,5 | 70,2 | 62,6 | 46,4 | 41,5 | 39,0 |
| Արարատյան դաշտավայրի 5 շրջաններ**) | 4087 | 147,0 | 189,8 | 288,3 | 419,8 | 483,6 |
| տոկոսներով | 14,4 | 16,7 | 14,8 | 16,3 | 16,5 | 17,7 |
| Երևան, Լենինական, Կիրովական | 308 | 115,5 | 289,9 | 657,0 | 1046,6 | 1181,2 |
| տոկոսներով | 1,1 | 13,1 | 22,6 | 37,3 | 42,0 | 43,3 |
| Ամբողջից՝ | | | | | | |
| Քաղաքային բնակչություն | — | 167,1 | 366,4 | 881,8 | 1481,5 | 1699,3 |
| տոկոսներով | | 19,0 | 28,6 | 50,0 | 59,5 | 62,3 |
| Գյուղական բնակչություն | — | 714,2 | 915,9 | 881,2 | 1010,4 | 1029,2 |
| տոկոսներով | | 81,0 | 71,4 | 50,0 | 40,5 | 37,7 |

Բերված տվյալները հնարավորություն են տալիս առանձնացնելու բնակչության տեղաշարժի երեք փուլեր:

**Նախապատերազմյան շրջան.** ինդուստրացումը հարուցում է բնակչության միգրացիա, որը դեռևս ինտենսիվ բնույթ չի ստանում, ավելանում է գյուղական, այդ թվում նաև լեռնային շրջանների բնակչությունը, իսկ քաղաքային բնակչությունը գերազանցապես աճում է Երևանի (70 տոկոս) և որոշ չափով Լենինականի, Կիրովականի, Ղափանի, Ալավերդու հաշվին (24 տոկոս):

**Քառասնական-հիսնական թվականներ.** ակնհայտ են պատերազմի և լեռնային գյուղերի անբարվոք վիճակի խիստ բացասական հետևանքները: Բնակչության հոսքը լեռնային շրջաններից դեպի քաղաքներ ու Արարատյան դաշտավայր՝ առավել մասսայական է դառնում. բազմաթիվ շրջաններում պակասում է բնակչության բացարձակ թիվը: Չնայած 20 տարում քաղաքատիպ բնակավայրերը գրեթե կրկնապատկվում են (18-ից՝ 35), Երևանը «կլանում է» քաղաքային բնակչության ողջ աճի գրեթե 60 տոկոսը:

**Վերջին 15 տարիներ.** հիսնական թվականների վերջերից սկսած՝ նկատելի տեղաշարժ է կատարվում արտադրաուժերը ռացիոնալ տեղաբաշխելու, ժողովրդական տնտեսության մեջ տերիտորիալ համամասնությունները բարելավելու, միգրացիոն հոսանքները կարգավորելու նպատակով: Հանրապետու-

*) Ներառյալ Սևանա լիճը (1.326 քառ. կմ), որը չի մտնում շրջանների տերիտորիայի մեջ:

**) Հաշվարկներում նորաստեղծ 3 շրջանները (Մասիս, Արագած, Նաիրի) մտցված են համապատասխան շրջանների մեջ: Արարատյան դաշտավայրն ընդգրկում է Արտաշատի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Աշտարակի, Արարատի շրջանները: Ընդ որում, վերջին երկու շրջանների տերիտորիան կազմում է 2.235 հազար քառ. կմ, որի մեծ մասը տարածվում է նախալեռնային գոտում:



թյան լեռնային շրջաններում ստեղծվեցին արդյունաբերական նոր հանգույցներ, շրջանային գրեթե բոլոր կենտրոնները վերածվեցին քաղաքատիպ վայրերի, որոշ չափով ավելացավ գյուղական բնակչության թիվը: Այսօր մենք ունենք 24 քաղաք և 33 քաղաքատիպ ավան (1959 թ. մարդահամարի տվյալներով, համապատասխանաբար՝ 14 և 21): Եթե 1959 թ. 20—50 հազար բնակչությամբ քաղաքների խմբի մեջ մտնում էր միայն Կիրովականը (49,4 հազար), ապա 15 տարի հետո (1974 թ. սկզբին) այդպիսի բնակավայրերի շարքը համալրեցին 7 քաղաք. Էջմիածին (37,2 հազար), Հրազդան (32,6 հազար), Աբովյան (32,1 հազար), Ղափան (30,9 հազար), Հոկտեմբերյան (28,3 հազար), Ալավերդի (21,8 հազար), Կամո (21,4 հազար), իսկ Կիրովականի բնակչությունը հասավ 122,6 հազարի:

Կարծես անհանգստանալու հիմք չկա: Չէ՞ որ հանրապետության բնակչության աճի մեջ աստիճանաբար իջնում է Երևանի բաժինը (1939—1958 թթ.՝ 60, իսկ 1959—1973 թթ.՝ 38 տոկոս): Սակայն չմոռանանք, որ փոխվում է նաև ամեն մի տոկոսի բացարձակ մեծությունը. առաջին 20 տարում այն կազմել է 3.300, իսկ հաջորդ 15 տարում՝ մոտ 10.000 մարդ, կամ մի դեպքում՝ Երևանի բնակչության տարեկան միջին աճը հավասար է 9,5, իսկ մյուս դեպքում՝ 25 հազարի:

Երևանում արդեն բնակվում է ավելի քան 900 հազար մարդ, և այն միլիոնանոց մայրաքաղաք կդառնա ոչ թե 1980 թ., ինչպես նախատեսվում է գլխավոր նախագծում, այլ 1977 թվականին: Այդ նույն ժամանակ էլ հանրապետության բնակչության թիվը կհասնի 3 մլն-ի:

Բնակչության ճիշտ մեկ երրորդը կուտակել մի քաղաքում, մեր կարծիքով, նպատակահարմար չէ:

**Նախ.** զգալիորեն դժվարանում ու բարդանում է միլիոնանոց բնակչության պահանջմունքների բավարարումը:

**Երկրորդ.** Երևանը, լինելով հանրապետության ձգողական միակ խոշոր կենտրոնը, ուժեղացնում է բնակչության միակողմանի հոսքը մյուս շրջանների, հատկապես լեռնային շրջանների հաշվին, և միակ արգավանդ դաշտավայրը քաղաքաշինական ռեգիոնի վերածելու ռեալ սպառնալիք ստեղծում (իր ազդեցության անմիջական շառավղի (30—40 կմ) սահմաններում Երևանն արդեն ընդգրկում է մոտ 1,2 մլն բնակչություն):

Խոշոր քաղաքները, այդ թվում նաև Երևանը, արտադրության, գիտատեխնիկական և կուլտուրական առաջընթացի կենտրոններ են: Դրանց առավել արագ աճն անխուսափելի է պատմական որոշակի ժամանակաընթացքում:

Արդի գիտատեխնիկական հեղափոխության, հասարակական արտադրության կառուցվածքային արագ փոփոխությունների ու հաղորդակցության միջոցների անընդհատ կատարելագործման դարաշրջանում բնակչության հոսքը և տեղաշարժը (ոչ միայն գյուղից քաղաք, այլև քաղաքից գյուղ) դառնում են անհրաժեշտություն: Խոշոր քաղաքների հսկայական ազդեցության շառավղի մեջ են ընդգրկվում ամբողջ ագլոմերացիաներ ու ռեգիոններ, բնակչությունը խիստ շարժունակ է դառնում: Այդ պայմաններում ոչ թե արտատնտեսական, այլ սոցիալ-տնտեսական լծակների միջոցով միայն կարող ենք կանխել խոշոր քաղաքների անբնական աճը:

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի մակարդակը թույլ է տալիս գիտականորեն կարգավորել ու կառավարել աշխատուժի տեղաշարժն ու միգրացիոն հոսանքները, կանխել խոշոր քաղաքների չհիմնավորված աճը և բնակչությանը, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, բնակեցնել ողջ երկրում քիչ թե շատ համաչափ:

Դեռևս երեսնական թվականների սկզբներից կուսակցության ու կառավարության որոշումներում շեշտվում է արդեն ձևավորված խոշոր քաղաքների աճը կարգավորելու անհրաժեշտությունը: Այդ խնդիրը դրված է եղել ՍՄԿԿ XX—XXIII համագումարներում:

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նույնպես հանձնարարված է «անշեղորեն իրագործել խոշոր քաղաքների աճը զսպելու կուրս»։ Դրա համար պահանջվում է. նախ, «որպես կանոն, դադարեցնել արդյունաբերական նոր ձեռնարկությունների տեղաբաշխումն այդ քաղաքներում», երկրորդ, «փոքր քաղաքներում և բանավաններում տեղաբաշխել խոշոր քաղաքներում գտնվող գործարանների ու ֆաբրիկաների ոչ մեծ մասնագիտացված ձեռնարկություններ ու մասնաճյուղեր»։ Սակայն ինչպես մեր, այնպես էլ մյուս հանրապետություններում դեռևս լրիվին չեն կենսագործվում կուսակցության համագումարների դիրեկտիվները։ Դրա հիմնական պատճառն այն է, որ մինիստրություններն ու գերատեսչությունները շահագրգռված չեն արտադրությունը կենտրոնացնելու փոքր ու միջին քաղաքներում։

Նախ. այդ տիպի քաղաքներում, որպես կանոն, չկան անհրաժեշտ կոմունիկացիաներ, բնակելի ֆոնդ և կուլտուր-կենցաղային օբյեկտներ, որոնց ստեղծման ծախսերը հիմնականում մտնում են ճյուղային կապիտալ ներդրումների մեջ, մինչդեռ արդեն ձևավորված մեծ քաղաքներում արտադրության կազմակերպման այդ պայմաններն առկա են, իսկ ծախսերը գերազանցապես կատարում են քաղաքային սովետները։

Երկրորդ. գործող ձեռնարկությունները կենտրոնացված են խոշոր քաղաքներում, իսկ տնտեսապես արդյունավետ է դրանց վերակառուցումը և ընդլայնումը, քան նորերի կառուցումը (արդյունաբերության կենտրոնացված կապիտալ ներդրումների գրեթե 2/3-ը ծառայում է այդ նպատակին)։

Երրորդ. խոշոր քաղաքներում առանձնակի դժվարություն չի ներկայացնում աշխատուժի, մասնավորապես որակյալ կադրերի հավաքագրումը։

Արդի գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում արդյունաբերությունը, հատկապես երբ խոսքը վերաբերում է ձեռնարկությունների վերակառուցմանը և ընդլայնմանը, հիմնականում զարգանում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին և չի կարող խոշոր քաղաքների բնակչության մեխանիկական աճի վճռական գործոն հանդիսանալ։ Մինչդեռ ընդամենը 39 քաղաքներ (երկրի 5.752 քաղաքատիպ բնակավայրերից), որոնք ներկայումս ունեն 500 հազար և ավելի բնակչություն, վերջին 16 տարվա ընթացքում (1959—1974 թթ.) ընդգրկել են ողջ երկրի, այդ թվում քաղաքային բնակչության աճի $^{1}/_{3}$-ը։

Գաղտնիքն այն է, որ միևնույն քաղաքը մեզ մոտ միաժամանակ հանդես է գալիս որպես արդյունաբերության, գիտա-ուսումնական հաստատությունների, պետական-կառավարական հիմնարկությունների ու քաղաքը կազմավորող այլ գործոնների կենտրոն և օգտվում է որոշակի արտոնություններից։ Այդ պատճառով էլ միութենական ու ինքնավար հանրապետությունների մայրաքաղաքներում, երկրամասերի ու մարզերի վարչական կենտրոններում կուտակվել է երկրի քաղաքային բնակչության կեսը։

Ծառայությունների ոլորտի բազմակողմանի զարգացումը այդ կենտրոններում, հասկանալի է, չի նպաստում քաղաքի և գյուղի կենսապայմանների տարբերությունների վերացմանը և միակողմանի միգրացիոն հոսանքների վճռական գործոն է դառնում։ Ուստի, ներկայումս պետք է ավելի մեծ ծավալով իրագործել ոչ միայն արդյունաբերության, այլև առաջին հերթին ծառայությունների ոլորտի ապակենտրոնացման խնդիրը։

Երևանում արդյունաբերական-արտադրական անձնակազմը քաղաքի ամբողջ աշխատողների մեկ երրորդն է կազմում և վերջին 4 տարում ավելացել է ընդամենը 6, իսկ բնակչության թիվը՝ 130 հազարով։ Այն գրեթե լրիվին զարգանում է շինարարության, քաղաքային տնտեսության, գիտահետազոտական ինստիտուտների, ուսումնական և այլ հաստատությունների, պետական-կառավարչական ապարատի ընդլայնման հաշվին։ Այստեղ է կենտրոնացված պետական-կոոպերատիվ բնակարանային շինարարության ու կոմունալ-կենցաղային ձեռնարկությունների կեսից ավելին, հանրայնացված բնակարանային ֆոնդի 60 տոկոսը և այլն։

Հետևապես, Երևանի մեխանիկական բարձր աճը կարող է կանխվել միայն



այն դեպքում, եթե մյուս քաղաքատիպ բնակավայրերում ստեղծվեն կյանքի առավել բարենպաստ պայմաններ։ Միայն դրանից հետո կարելի է լրջորեն արծարծել Երևանից արդյունաբերական ձեռնարկությունների, գիտահետազոտական ինստիտուտների, ուսումնական հաստատությունների, վարչական հիմնարկությունների մի մասի տեղաշարժի հարցը։ Ընդ որում, դրանց տեղաբաշխումը բազմաթիվ քաղաքներում ու շրջանային կենտրոններում, մեր կարծիքով, հարցի ճիշտ լուծումը չէ։ Առավել նպատակահարմար է ստեղծել այնպիսի քաղաքներ, որոնք ունենան որոշակի ֆունկցիոնալ ուղղություն՝ գիտաարտադրական, ուսումնա-արտադրական, գիտա-ուսումնական, ագրարային-արդյունաբերական, առողջապահական-տուրիստական և այլն։

ԱՐԴԻ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ պահանջում է արտադրության ու ինֆորմացիայի կենտրոնացման որոշակի աստիճան, հաղորդակցության կատարելագործման միջոցներ, բնակչության բազմակողմանի սպասարկում, այլ կերպ՝ օպտիմալ մեծության բարեկարգ քաղաք։ Լենինականը և Կիրովականը, օրինակ, կարող են դառնալ Շիրակի և Լոռու տնտեսական շրջանների լիարժեք կենտրոններ։ Նման կենտրոններ պետք է ստեղծել նաև Սևանի ու Սյունիքի տնտեսական շրջաններում։ Դրա խիստ անհրաժեշտությունը երևում է նաև հետևյալ տվյալներից.

Հանրապետության տերիտորիան, բնակչությունը և արդյունաբերությունն
ըստ տնտեսական շրջանների (տոկոսներով)

| Տնտեսական շրջանները*) | 1975 թ. 1/1 | | | 1975 թ. | |
|---|---|---|---|---|---|
| | տերիտորիան**) | բնակչությունը | 1 կմ² բնակ. թիվը | արդ-արտ. անձ. թիվը | համախ. արտադ. |
| Արարատյան | 19,3 | 52,8 | 255 | 64 | 68 |
| այդ թվում՝ Երևան | 1,0 | 32,5 | | 52,7 | 56 |
| Շիրակի | 14,6 | 13,0 | 83 | 12 | 9,5 |
| այդ թվում՝ Լենինական | 0,1 | 6,6 | | 9,5 | 8 |
| Լոռու | 14,4 | 12,7 | 82 | 12 | 12 |
| այդ թվում՝ Կիրովական | 0,1 | 4,6 | | 7,7 | 8 |
| Սևանի | 24,4 | 14,4 | 56 | 8,6 | 7 |
| Սյունիքի | 22,8 | 7,1 | 30 | 3,4 | 3,5 |
| Ընդամենը՝ Հայկ. ՍՍՀ | 95,5 | 100 | 96 | 100 | 100 |

*) Առանձին տնտեսական շրջանների մեջ մտնում են հետևյալ վարչական շրջանները (բացի նշված քաղաքներից).

Արարատյան՝ Աբովյանի, Ապարանի, Արարատի, Արտաշատի, Աշտարակի, Մասիսի, Նաիրիի, Հոկտեմբերյանի, Էջմիածնի։

Շիրակի՝ Ամասիայի, Անիի, Արագածի, Արթիկի, Ախուրյանի, Ղուկասյանի, Թալինի։

Լոռու՝ Գուգարքի, Կալինինոյի, Նոյեմբերյանի, Սպիտակի, Ստեփանավանի, Թումանյանի։

Սևանի՝ Վարդենիսի, Իջևանի, Կամոյի, Կրասնոսելսկի, Մարտունու, Հրազդանի, Սևանի, Շամշադինի շրջանները և քաղ. Դիլիջանը։

Սյունիքի՝ Ազիզբեկովի, Գորիսի, Եղեգնաձորի, Ղափանի, Մեղրու, Սիսիանի։

**) Տերիտորիայի մնացած 4,5 տոկոսը զբաղեցնում է Սևանա լիճը։

Աղյուսակի տվյալները խիստ մտահոգիչ են և հրամայաբար պահանջում են հեռանկարում վարելու գիտականորեն հիմնավորված սոցիալ-տնտեսական ու դեմոգրաֆիական քաղաքականություն:

Հնարավոր է երեք տարբերակ:

**Առաջին.** շարունակում է բարձրանալ Արարատյան տնտեսական շրջանի տեսակարար կշիռը մյուսների հաշվին: Հիշեցնենք, որ 1926 թ. մարդահամարի տվյալներով, 5 տնտեսական շրջանների բաժինները հանրապետության բնակչության ընդհանուր թվի մեջ համապատասխանաբար կազմել են՝ 30,4, 17,7, 17,1, 22,6, 12,2 տոկոս: Եթե հաշվարկների համար հիմք ընդունենք թեկուզ վերջին հնգամյակի անցած տարիների միտումը, ապա 15 տարի հետո Արարատյան տնտեսական շրջանում կբնակվի հանրապետության բնակչության գրեթե 60 տոկոսը, այդ թվում Երևանում՝ 38—39 տոկոսը:

**Երկրորդ.** կանխվում է Արարատյան գոտում բնակչության հետագա կուտակումը, որին ձգտում են հասնել հանրապետության պետպլանը և նրա գիտահետազոտական տնտեսագիտական ինստիտուտն արտադրաուժերի տեղաբաշխման իրենց նախագծերում: Դա նշանակում է՝ հեռանկարում ևս Երևանի բնակչությունը կաճի և, ասենք, հանրապետության 4 մլն բնակչությունից 1,3 մլն կբնակվի մայրաքաղաքում:

Այդ դեպքում, օրինակ, Երևանի բնակչությանը բնակարանով ու ջրով բավարարելու համար անհրաժեշտ է նրա բնակարանային ֆոնդը եռապատկել, իսկ ջրամատակարարումն ավելի քան կրկնապատկել. այսինքն՝ կառուցել ևս երկու նոր Երևան և լրացուցիչ ապահովել այնքան ջրով, որքան չեն սպառում հանրապետության մյուս քաղաքներն ու գյուղերը՝ միասին վերցրած:

**Երրորդ.** ապահովվում է 4 լեռնային տնտեսական շրջանների առավել արագ զարգացումը, որի շնորհիվ փոխվում է նաև բնակչության շարժման ուղղությունը, իջնում է Արարատյան գոտու, հատկապես Երևանի տեսակարար կշիռը հանրապետության բնակչության ընդհանուր թվի մեջ:

Իսկ ինչո՞ւ ժողովրդական տնտեսության միասնական պլանավորման պայմաններում չենք կարող մեր փոքր հանրապետությունում ունենալ մայրաքաղաք, որի բնակչությունը չանցնի միլիոնի բնագիծը: Դրա համար յուրաքանչյուր տնտեսական շրջանում պետք է ստեղծել օպտիմալ մեծությամբ 1—2 խոշոր քաղաք:

Հասկանալի է, որ գյուղական բնակչության ավելացման մասին խոսք լինել չի կարող: Տասնհինգ տարի առաջ հանրապետության բնակչության կեսն էր ապրում գյուղական վայրերում, ներկայումս՝ 37 տոկոսը, իսկ 15 տարի անց՝ գյուղական բնակչության բաժինը կկազմի հազիվ մեկ քառորդ: Քանի որ գյուղատնտեսությունն այսուհետև ինտենսիվ զարգացման առավել արտահայտված բնույթ կստանա, ապա հեռանկարում գյուղական բնակչության, այդ թվում երիտասարդության հոսքը դեպի քաղաք կլինի անխուսափելի:

**ԱՅՍ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ԿԵՆՍԱԿԱՆ** անհրաժեշտություն է դառնում սոցիալ-տնտեսական այնպիսի կոմպլեքս միջոցառումների իրագործումը, որոնք լեռնային շրջաններում խոշոր կենտրոնների ստեղծման, արդյունաբերության աշխատատար ճյուղերի ու ծառայությունների ոլորտի արագ զարգացման միջոցով կանխեին աշխատանքային ռեսուրսների հոսքը դեպի երևանյան ռեգիոնը: Այդ առթիվ ամեն մի առաջարկություն բազմակողմանի ուսումնասիրության ու հիմնավորման կարիք ունի, որով և զբաղվում են համապատասխան գիտահետազոտական ինստիտուտները:

Վերոհիշյալ պրոբլեմները գիտականորեն լուծելու ուղեցույց է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը, որը հանգամանորեն քննարկվեց ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում: Ջերմ հավանություն տալով այդ որոշմանը և նշելով հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա զարգացումն արագացնելու կոնկրետ ուղիները, պլենումը հատկապես նշեց, որ Հայաստանի սակավահողության, դեմոգրաֆիական



և մյուս առանձնահատկությունների պայմաններում նոր ձեռնարկությունները գերադասնցապես պետք է տեղաբաշխել նոր կազմակերպվող արդյունաբերական հանգույցներում, միջին ու փոքր քաղաքներում՝ հաշվի առնելով արտադրական, կոմունալ-բնակարանային և կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման հարցերի կոմպլեքսային լուծման անհրաժեշտությունը: Նախատեսվում է 1976—1980 թվականներին արդյունաբերական նոր ձեռնարկություններ հիմնել և գործող ձեռնարկությունների առկա մասնաճյուղերը վերակառուցել հանրապետության այն շրջաններում, որտեղ կա հանրային արտադրության մեջ չընդգրկված աշխատունակ բնակչություն: Հանրապետությունում այժմ արդեն կարևորվում է արդյունաբերական հանգույցների ու համալիրների ստեղծումը: Իսկ, ինչպես նշեցինք, այդ համալիրները պետք է ունենան ո՛չ միայն արդյունաբերական, այլև գիտա-արտադրական, ուսումնա-գիտական և այլ թեքումներ: Այս ամենը կնպաստի հանրապետության արտադրաուժերի արագ զարգացմանն ու ճիշտ տեղաբաշխմանը, նրա բնական և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը, ինչպես նաև միգրացիոն պրոցեսների կարգավորմանը:

Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում, տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետությունում կառուցվելիք 42 նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններից 29-ը կկառուցվի փոքր քաղաքներում և գյուղերում: Ոչ մեծ օբյեկտների գերակշռող մասը, ընդհանուր քանակով ավելի քան 40-ը (հացի, պանրի գործարաններ, կաթի ընդունման կետեր և այլ ձեռնարկություններ), նույնպես կտեղադրվի փոքր քաղաքներում, շրջանային կենտրոններում և գյուղական բնակավայրերում: Ընդհանուր առմամբ, փոքր քաղաքներում և շրջաններում արդյունաբերական արտադրանքը կավելանա 75 տոկոսով, հանրապետության արդյունաբերության ողջ աճի 43—47 տոկոսի դիմաց:

Արտադրական ուժերի այդպիսի տեղաբաշխումը, անկասկած, սոցիալ-տնտեսական լուրջ տեղաշարժեր կառաջացնի փոքր քաղաքներում ու գյուղական շրջաններում: Այդ բոլորի հետ պահանջվում է ավելի մեծ ուշադրություն դարձնել փոքր բնակավայրերում, այսպես կոչված, ինֆրաստրուկտուրայի՝ բնակարանային-կոմունալ տնտեսության, կուլտուր-կենցաղային օջախների, առևտրի և սպասարկման ոլորտի մյուս ճյուղերի առավել արագ զարգացմանը:

Տասներորդ հնգամյակում մեծ քաղաքների աճի հետագա սահմանափակման ու տնտեսապես հեռանկարային փոքր ու միջին մեծության քաղաքների առավել արագ զարգացման անհրաժեշտությունը շեշտվեց նաև ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերում:

Հնգամյակի սոցիալական ու տնտեսական համակողմանի զարգացման ծրագիրը, անկասկած, դրականապես կանդրադառնա ինչպես ներհանրապետական, այնպես էլ միջհանրապետական միգրացիոն հոսանքների կարգավորման վրա:

Սակայն այդ խրթին պրոբլեմի արմատական լուծումը պայմանավորված է ոչ միայն ժողովրդական տնտեսության կառավարման, պլանավորման ու նյութական խթանման գործող սիստեմի հետագա կատարելագործմամբ, այլև բնական, սոցիալական, ազգային-էթիկական և բազմաթիվ այլ կարևոր գործոններով, որոնք հաշվի առնելով միայն կարելի կլինի ցանկալի ու նպատակային ուղղություն տալ բնակչության տեղաշարժին:

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԿԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԳՈՐԾԱԿԻՑԸ

**Ա. Ա. ԲԱԴԱԼՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու
**Գ. Հ. ՄԻՐԶՈՅԱՆ**

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ տեխնիկական վերազինման նյութական հիմքը մեքենաշինությունն է, որը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն ապահովում է արդյունավետ, ժամանակակից բարձր տեխնիկական հատկություններ ունեցող մեքենաներով ու սարքերով: Այս նկատառումով էլ ՍՄԿԿ Կենտկոմն ու սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում արդյունաբերության այդ ճյուղի առավել արագ զարգացմանը:

ՀՍՍՀ մեքենաշինությունը արագ տեմպերով սկսեց զարգանալ հետպատերազմյան տարիներին, որի շնորհիվ կարճ ժամանակաշրջանում այն դարձավ հանրապետության արդյունաբերության գլխավոր ճյուղերից մեկը: Այժմ դրա արտադրանքի տեսակարար կշիռը արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալում կազմում է ավելի քան 24 տոկոսը:

Հանրապետության մեքենաշինությունը թողարկում է մեծ թվով գեներատորներ, մետաղահատ հաստոցներ, շարժական էլեկտրակայաններ, տրանսֆորմատորներ, կոմպրեսորներ, կենտրոնախույս պոմպեր, ավտոմեքենաներ և այլն: Ներկայումս Հայկական ՍՍՀ-ը մետաղահատ հաստոցների արտադրության ծավալով միութենական հանրապետությունների մեջ գրավում է հինգերորդ տեղը, բարձր ճշգրտության հաստոցների արտադրությամբ՝ առաջին, էլեկտրատեխնիկական արտադրանքով՝ երրորդ տեղը:

Տասներորդ հնգամյակում հանրապետության մեքենաշինության արտադրանքը, ինչպես միշտ, կաճի առաջանցիկ տեմպերով: Կկառուցվեն և շահագործման կհանձնվեն ժամանակակից տեխնիկայով հագեցված մեծ թվով գործարաններ: Կբարելավվի թողարկվող արտադրանքի անվանացանկային կառուցվածքը: Կիրականացվի ավելի բարձր արտադրողական, ժամանակակից մեքենաների, սարքերի, էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի սերիական թողարկումը: Այժմ մեքենաշինարարների առջև խնդիր է դրված ըստ հնարավորին լրիվ օգտագործել արտադրական կարողությունները, իրենց հնգամյա պարտավորությունները հաջողությամբ իրականացնելու համար:

Մեր հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում արտադրական կարողությունները առավել արդյունավետ են օգտագործվում Երևանի էլեկտրաապարատների գործարանի դրոշմման արտադրամասում: Այստեղ մեքենաների և սարքավորումների հերթափոխային աշխատանքի միջին գործակիցը հասնում է 1,78, իսկ աշխատանքային առանձին տեղամասերում այն ավելի բարձր է: Դրան մեծապես նպաստում են բանվորների որակավորման



բարձր մակարդակը, աշխատանքային ամուր կարգապահությունը, ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումը:

ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարները արդյունաբերության, այդ թվում մեքենաշինության աշխատողների առաջնահերթ խնդիրներից մեկը համարեցին արտադրական կարողությունների օգտագործման ըստ ամենայնի բարելավումը և հիմնական արտադրաֆոնդերի ֆոնդահատույցի բարձրացումը: «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում» նշված է. «Ապահովել արտադրական կարողությունների աճը, առաջին հերթին՝ ի հաշիվ ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, սարքավորումների նորացման ու արդիականացման, կազմակերպական-տեխնիկական միջոցառումների անցկացման, արագացնել բարոյապես հնացած տեխնիկայի փոխարինումը՝ նպատակ ունենալով ավելացնել բարձրորակ արտադրանքի թողարկումը ավելի պակաս ծախսումներով և ավելի կարճ ժամկետներում»:

ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԿԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ բարելավումը առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում հատկապես ֆոնդատար և արագ զարգացող ճյուղերում, որոնց թվին է պատկանում նաև մեր հանրապետության մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերությունը: Մեքենաշինական մի շարք ձեռնարկություններում մեր կատարած ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ շատ ձեռնարկություններում արտադրական կարողությունների օգտագործման մակարդակը զգալիորեն ցածր է, քան ներկայացված է հաշվետվություններում: Բանն այն է, որ արտադրական կարողությունների մեծությունը որոշելիս, հաճախ ձեռնարկություններում հաշվի չեն առնում գործող մեթոդական ցուցումները և թույլ են տալիս կոպիտ սխալներ: Արդյունքը լինում է այն, որ նվազեցվում է կարողությունների մեծությունը և ստեղծվում է այն տպավորությունը, թե կարողությունները լավ են օգտագործվում: Մինչդեռ արտադրական կարողությունների ճիշտ հաշվարկումը ժողովրդա-տնտեսական շատ կարևոր նշանակություն ունի: Այդ հաշվարկներն օգտագործվում են պլանավորվող ժամանակաշրջանի արտադրական ծրագիրը հիմնավորելու, ներարտադրական ռեզերվները հայտաբերելու, արտադրության «նեղ տեղերը» վերացնելու, լրացուցիչ սարքավորումների պահանջը ճշտելու և հայտերը ժամանակին ներկայացնելու, ինչպես նաև արտադրության մասնագիտացման, կոոպերացման և կապիտալ ներդրումների նպատակահարմար ուղղությունների որոշման հարցերը լուծելու համար: Հաճախ հաշվարկները կազմվում են ուշացումներով՝ պլանավորվող տարվա առաջին եռամսյակում, իսկ մինիստրությունների կողմից հաստատվում տարվա կեսին, կորցնելով իրենց գործնական նշանակությունը: Բերենք բազմաթիվ օրինակներից մեկը. Երևանի ավտոպահեստամասերի գործարանի 1970 թ. արտադրական կարողությունների հաշվարկները ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրությունը պաշտոնապես քննարկել և ընդունել է նույն տարվա սեպտեմբերին, 1971-ինը՝ հունիսին, 1972 և 1973 թվականներինը՝ մայիսին, 1974-ինը՝ ապրիլին, իսկ 1975-ինը՝ հուլիս ամսին:

Ձեռնարկության արտադրական կարողությունը մեկ տարվա ընթացքում արտադրանքի թողարկման առավելագույն հնարավորությունն է՝ արտադրական սարքավորումների և հրապարակների լրիվ օգտագործման, տեխնոլոգիայի, արտադրության և աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդների կիրառման պայմաններում: Արտադրանքի թողարկման այդ առավելագույն հնարավորությունը կախված է բազմաթիվ գործոններից, իսկ գլխավորապես արտադրական ծրագրի անվանացանկից, հիմնական ֆոնդերի (հատկապես մեքենաների ու սարքավորումների) քանակական ու որակական կազմից, թողարկվող արտադրանքի աշխատատարությունից, ձեռնարկության աշխատանքի ռեժիմից, կիրառվող տեխնոլոգիայից, արտադրության և աշխատանքի կազմակերպման կոնկրետ պայմաններից և այլն: Ասվածից հետևում է, որ ձեռնարկության արտադրական կարողության որոշումը բավականին բարդ պրոցես է և իրականացվում է մի ամբողջ շարք տեխնիկա-տնտեսական հաշվարկների

միջոցով։ Հաշվարկների առանցքը, վերջին հաշվով, կազմում են երկու խումբ ցուցանիշներ, որոնք բնորոշում են սարքավորումների աշխատանքային ժամանակի ֆոնդը և արտադրանքի միավորի աշխատատարությունը։

Սարքավորումների աշխատանքային ժամանակի ֆոնդը որոշվում է, հիմնական տեխնոլոգիական սարքավորումների և տարեկան աշխատանքային օրերի քանակի, աշխատանքի ռեժիմի և աշխատօրվա տևողության հիման վրա։ Հիմնական տեխնոլոգիական սարքավորումների տեղեկագրում պետք է ցույց տրվի ձեռնարկության հաշվեկշռում արտացոլված, ինչպես տեղակայված, այնպես էլ չտեղակայված սարքավորումների ընդհանուր քանակը, նշելով, թե ինչ քանակի սարքավորումներ, ինչ պատճառներով չեն մտցվում արտադրական կարողությունների հետագա հաշվարկների մեջ։ Սակայն մեր կողմից ուսումնասիրված ձեռնարկություններից շատերը այս առանցքային դրույթը չեն իրագործում։ Այսպես, 1975 թվականի հունվարի 1-ի դրությամբ, նշված տեղեկագրում պակաս են ցույց տրված (քան հաշվապահական հաշվեկշռում) մետաղահատ և դարբնոցա-մամլիչային սարքավորումներ՝ Երևանի ավտոպահեստամասերի գործարանում— 165 միավոր, ավտոգործարանում— 69 միավոր, ավտոբեռնիչների գործարանում— 24 միավոր, Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում— 17 միավոր, Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանում— 27 միավոր, գերճշգրիտ հաստոցների գործարանում— 29 միավոր և այլն։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը պետք է ուղեկցվի աշխատատարության նվազեցմամբ։ Սակայն, այս հանրահայտ դրույթի պահանջները արտադրական կարողությունները հաշվարկելիս նույնպես անտեսվում են։ Երևանի ավտոբեռնիչների գործարանում 1971—1975 թթ. աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 37,9 տոկոսով, 4.022 մակնիշի ավտոբեռնիչի ընդհանուր աշխատատարությունը իջել է 3 տոկոսով, սակայն նույն ժամանակամիջոցում, արտադրական կարողությունները հաշվարկելիս մեխանիկական արտադրամասում այդ ավտոբեռնիչի աշխատատարությունը ցույց է տրվել 20,8 տոկոսով աճած։ Եվ դա այն դեպքում, երբ մեխանիկական մշակման աշխատատարությունը կազմում է ավտոբեռնիչի ընդհանուր աշխատատարության ավելի քան 70 տոկոսը։

Ավտոբեռնիչների գործարանի կարողությունների հաշվարկներում օգտագործված նորմաները հիմնավորված չեն։ Դրանք չեն համապատասխանում նաև աշխատանքի և աշխատավարձի բաժնի կողմից կիրառվող վճարման նորմաներին։ Եթե նույնիսկ ենթադրենք, որ մեխանիկական մշակման աշխատատարությունը 1971—1975 թվականներին չի իջել, այլ մնացել է 1971 թվականի մակարդակին, որը քիչ հավանական է, ապա մեխանիկական արտադրամասի կարողությունը գործարանային հաշվարկների նկատմամբ կմեծանա 23 տոկոսով։ Այս գործարանի կարողությունների հաշվարկներում ավտոբեռնիչի հավաքման աշխատատարությունը (հավաքման տեղամաս) ցույց է տրված 199,1 նորմա-ժամ, իսկ աշխատանքի և աշխատավարձի բաժնի տվյալներով այն կազմում է 141,0 նորմա-ժամ։ Սրա հաշվին տեղամասի կարողությունը արհեստականորեն իջեցվել է մոտ 40 տոկոսով։ Այսպիսով, այդ գործարանում միայն աշխատատարության նորմաների խախտման պատճառով 1975 թվականի արտադրական կարողությունը իջեցվել է մոտ կիսով չափ, իսկ միջին տարեկան կարողությունների օգտագործման մակարդակը 58,3 տոկոսից բարձրացվել է 98,1 տոկոսի։

Արտադրական կարողությունների հաշվարկներում աշխատատարության նորմաները արհեստականորեն բարձրացրել են, իսկ կարողությունները նվազեցրել Սպիտակի վերելակաշինական գործարանում 29 տոկոսով, Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանում՝ 10 տոկոսով, Երևանի էլեկտրամեխանիկական գործարանում՝ 16 տոկոսով և այլն։ Նման օրինակներ կարելի է շատ բերել։

Քիչ չեն դեպքերը, երբ ձեռնարկությունները հաշվարկներում գործող նորմաների կատարման տոկոսը արհեստականորեն նվազեցնելով, պակասեցնում են նաև արտադրական կարողությունների մեծությունը։ Երևանի ավտոպահեստա-



մասերի գործարանի արտադրական կարողությունների հաշվարկներում նորմաների կատարման միջին տոկոսը վերցված է մոտավորապես 130—135։ Մինչդեռ 1975 թ. առաջին եռամսյակում մեխանիկական № 1 արտադրամասում այն կազմել է 316,5, № 2-ում՝ 293,7, № 3-ում՝ 193,4 տոկոս, ապրիլ և մայիս ամիսներին համապատասխանաբար՝ № 1-ում 283,1 և 280,4, № 2-ում՝ 288,3 և 283,1 տոկոս, № 3-ում՝ 190,9 և 287 տոկոս։ Այսպիսին է վիճակը Երևանի կոմպրեսորների գործարանում և մի շարք այլ ձեռնարկություններում։

Վերը բերված որոշիչ ցուցանիշների հիման վրա հաշվարկված մեծությունը դեռևս լիովին չի արտահայտում ձեռնարկության արտադրական կարողությունը։ Այն վերջնականապես որոշվում է միայն արտադրության «նեղ տեղերը» վերացնելու նպատակով տեխնիկա-տնտեսական միջոցառումներ մշակելուց և դրանք արտադրության տեխնիկական զարգացման պլանում նախատեսելուց հետո։

Այդ միջոցառումները մշակվում և իրականացվում են, հիմնականում, հետևյալ երեք ուղղություններով.

ա) առաջավոր տեխնոլոգիայի և նոր տեխնիկայի ներդրում, առկա սարքավորումների մոդեռնացում ու ավելի լավ օգտագործում,

բ) աշխատանքների և սարքավորումների վերաբաշխում՝ նրանց առանձին տեսակների և խմբերի, ինչպես նաև արտադրամասերի միջև,

գ) սարքավորումների աշխատանքի հերթափոխայնության բարձրացում (անցում երեք հերթափոխային աշխատանքի)։

Այս շատ կարևոր պահանջները, սակայն, հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում իրագործում են ոչ լրիվ, իսկ որոշ դեպքերում կրում են ձևական բնույթ։ Միջոցառումները լավագույն դեպքում կիրառվում են միայն «նեղ տեղերի» վերացման համար։ Այնինչ դրանք պետք է մշակվեն ձեռնարկության բոլոր ստորաբաժանումների՝ արտադրամասերի, տեղամասերի, գծերի ու սարքավորումների առանձին խմբերի համար, որոնց կիրառումը կարող է մեծապես նպաստել արտադրական կարողությունների ավելացմանը և դրանց օգտագործման արդյունավետության բարձրացմանը։ Այսպես, Երևանի ավտոպահեստամասերի գործարանում, 1975 թ. հաշվարկների համաձայն, գործում են 32 հոսքային գծեր և դարբնոցային ու ջերմամշակման արտադրամասեր, բայց «նեղ տեղերի» վերացման նպատակով միջոցառումներ են նախատեսվել միայն երեք գծերի համար։ Սակայն, եթե նշված բոլոր գծերի համար մշակվեին նույնիսկ ոչ մեծ դժվարությունների և ծախսերի հետ կապված միջոցառումներ, ապա գործարանի կարողությունը կավելանար 3,3 մլն ռուբլով կամ 30 տոկոսով։

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՄԵՔԵՆԱՇԻՆԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ արտադրական կարողությունների օգտագործման ցածր մակարդակը առկա հսկայական ռեզերվների ու հնարավորությունների վատ օգտագործման հետևանք է։ Այդ ռեզերվները կապված են հիմնական ֆոնդերի օգտագործման բարելավման, հերթափոխության գործակցի բարձրացման, ամբողջօրյա և ներհերթափոխային պարապուրդների վերացման, նոր գործարկվող կարողությունների յուրացման ժամկետների կրճատման, արտադրության կազմակերպման և պլանավորման բազմաթիվ հարցերի հետ։ ՀԿԿ XXVI համագումարում իրավացիորեն նշվեց, որ «Չօգտագործված ռեզերվները և հնարավորությունները մեզանում շատ շատ են։

Դեռևս ցածր է հերթափոխայնության գործակիցը մեքենաշինության ձեռնարկություններում։ Մետաղահատ սարքավորումների ժամանակի ռեժիմային ֆոնդը թերօգտագործվում է մոտավորապես 30—35 տոկոսով։ Մետաղամշակման սարքավորումների համակազմը օգտագործվում է 85 տոկոսի չափով»։

Արտադրական կարողությունների օգտագործման արդյունավետության բարձրացման խոշոր ռեզերվ է նոր գործարկվող ձեռնարկությունների, արտադրամասերի և առանձին ագրեգատների նախագծային կարողությունների յուրացման ժամկետների կրճատումը։ Սակայն 1975 թ. մեր կողմից ուսումնասիրված հանրապետության հաստոցաշինական հինգ գործարաններից նախա-

գծային կարողությունները դեռևս չեն յուրացրել երեքը, ավտոմոբիլաշինական երեք ձեռնարկություններից երկուսը և այլն։

Արտադրական կարողությունների օգտագործման արդյունավետության բարձրացմանը զգալիորեն խանգարում է նաև մեքենաշինական ձեռնարկությունների անհամաչափ աշխատանքը։ Հանրապետության մեքենաշինական 17 ձեռնարկություններից ինը 1975 թ. առաջին տասնօրյակում թողարկել են տարեկան արտադրանքի ողջ ծավալի 20 տոկոսից պակաս, իսկ երրորդ տասնօրյակում՝ 50 տոկոսից ավելի։ Այսպիսի գրոհայնությունը հիվանդագին է անդրադառնում ձեռնարկության գործունեության բոլոր կողմերի, առաջին հերթին, թողարկվող արտադրանքի որակի վրա։ Ըստ տասնօրյակների՝ զգալիորեն տատանվում է սարքավորումների բեռնվածության գործակիցը, արտադրական կարողությունները ամսվա սկզբին գործում են թերբեռնված.

Տասներորդ հնգամյակում պլանային առաջադրանքները խիստ լարված են. եթե հանրապետության արդյունաբերության արտադրանքը հնգամյակում աճելու է 43—47, ապա մեքենաշինությանը՝ մոտ 80 տոկոսով։ Որպեսզի մեքենաշինության բնագավառի աշխատողները կարողանան հաջողությամբ իրականացնել իրենց առաջադրված դժվարին խնդիրը, պետք է սիստեմատիկաբար հայտաբերեն և իրականացնեն արտադրական կարողությունների օգտագործման արդյունավետության բարձրացմանը նպաստող բոլոր անհրաժեշտ միջոցառումները։ Իսկ այդ միջոցառումները բազմաթիվ են, դրանք կարելի է հայտաբերել արտադրության արդեն ձեռք բերված փաստացի մակարդակը տեխնիկա-տնտեսական ռեալ հաշվարկներով հիմնավորված արտադրական կարողության հետ համեմատելու միջոցով միայն։

Վերը նշված թերությունների պատճառը մասամբ այն է, որ գործող մեթոդական ցուցումները դեռևս թերի են, լիովին չեն ընդգրկում արտադրական կարողությունների հաշվարկման կոմպլեքսային հարցերը և չեն խթանում ինչպես առանձին արտադրամասերի, այնպես էլ ձեռնարկության կարողությունների օգտագործման արդյունավետության բարձրացմանը։

Մեր կարծիքով, արտադրական կարողությունների հաշվարկների ժամանակ նախատեսվող տեխնիկա-տնտեսական միջոցառումների լավագույն չափանիշ կարող է ծառայել մշակվող միջոցառումների այնպիսի ծավալը, որի իրականացումը կապահովի կարողությունների օգտագործման և սարքավորումների բեռնվածության գործակիցների նախապես սահմանված նորմատիվային հարաբերակցությունը։ Կատարված ուսումնասիրության արդյունքները թույլ են տալիս առաջարկել նշված գործակիցների հետևյալ նորմատիվային հարաբերակցությունը։

| Կարողությունների օգտագործման գործակցի դեպքում | Սարքավորումների բեռնվածության գործակիցը պետք է լինի |
|---|---|
| Մինչև 0,7 | Մինչև 0,5[1] |
| 0,7—0,8 | 0,5—0,65 |
| 0,8—0,9 | 0,65—0,75 |
| 0,9-ից բարձր | 0,8 և բարձր |

Պլանավորման մեջ արտադրական կարողությունների դերի բարձրացումը պահանջում է նաև կարողությունների հաշվարկները կատարել նախքան հիմնական պլանային առաջադրանքների հաստատումը և դրանք ծառայեցնել այդ առաջադրանքների հիմնավորման նպատակին։

[1] Միայն այն ձեռնարկությունների համար, որոնց կարողությունները գտնվում են յուրացման փուլում։

# ԱԳՐԱՐԱ-ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԻՆՏԵԳՐԱՑԻԱՆ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**ԿԻՄԱ ՎԱՐԴԱՆՅԱՆ**

Սոցիալիստական էկոնոմիկան մի բարդ տնտեսական օրգանիզմ է, որի գործունեությունն իրականանում է միասնական տնտեսական պլանի հիման վրա, և դրա յուրաքանչյուր ճյուղը վերարտադրության պրոցեսում կատարում է որոշակի ֆունկցիա։ Ընդլայնված վերարտադրության պրոցեսում առաջատար դերը պատկանում է արդյունաբերությանը, որն ինդուստրիալ-տեխնիկական հիմքի վրա ապահովում է ամբողջ հասարակական արտադրության անընդհատ զարգացումը։ Բայց պակաս կարևոր դեր չունի նաև գյուղատնտեսությունը, որը բնակչությանը բավարարում է սննդամթերքներով, որոնց արտադրությունը, Կ. Մարքսի արտահայտությամբ, «...նրանց կյանքի ու առհասարակ ամեն արտադրության ամենից առաջնակարգ պայմանն է...» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, 2-րդ մաս, Երևան, 1949, էջ 179)։

Իր հերթին գյուղատնտեսության զարգացման աստիճանով է պայմանավորված թեթև արդյունաբերության, սննդարդյունաբերության և ժողովրդական տնտեսության մի շարք այլ ճյուղերի առաջընթացը, քանի որ գյուղատնտեսական արտադրությունը հումքային բազա է ստեղծում այդ ճյուղերի համար։ Սոցիալիստական գյուղատնտեսության առջև խնդիր է դրված՝ ապահովել գյուղատնտեսական արտադրության հետագա աճը, ըստ ամենայնի բարձրացնել հողագործության կուլտուրան և անասնապահության արդյունավետությունը, արդյունաբերությանը՝ հումքով և բնակչությանը՝ սննդամթերքներով բավարարելու համար։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1965 թ. մարտյան պլենումում ընկ. Լ. Ի. Բրեժնևը խորապես հիմնավորեց գյուղատնտեսության դերը կոմունիստական շինարարության մեջ։ Նա ընդգծեց. «...որ գյուղատնտեսության վերելքը այն է, ինչ կենսականորեն անհրաժեշտ է կոմունիզմի հաջող կառուցման համար։ Այդ համաժողովրդական խնդիրը լուծելու համար մենք պետք է գյուղատնտեսությունը դնենք տնտեսական ամուր հիմքերի վրա» (Լենինյան կուրսով, հ. 1, էջ 93)։ Մարտյան պլենումի դրույթներին համապատասխան, մշակվեցին և իրականացվեցին գյուղատնտեսության հետագա զարգացման կոմպլեքս միջոցառումներ։

Վերջին տասը տարում սոցիալիստական գյուղատնտեսության ձեռք բերած նվաճումները, հողագործության և անասնապահության արտադրանքի արտադրության նշանակալի աճը հաստատեցին այդ պատմական պլենումի որոշումների կենսական մեծ ուժը։

ՍՄԿԿ-ն իր ագրարային քաղաքականության մեջ և գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների համակարգում մեծ նշանակություն է տալիս գյուղատնտեսական արտադրության կազմակերպման ձևերի կատարելագործմանը, էկոնոմիկայի այդ կարևոր ճյուղի կառավարման բարելավմանը։ Խոսքը արդի էտապում միջտնտեսային կոոպերացման և ագրարա-արդյունա-

քերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման՝ հետագա աճող դերի մասին է։

Կուսակցության ծրագրում կարևոր նշանակություն է տրվում արդյունաբերության միջև տնտեսական կապերի զարգացմանը, դրանց օրգանական միացմանը՝ ի դեմս ագրարա-արդյունաբերական ձեռնարկությունների և միավորումների։ Ինչպես նշված է ծրագրում, տնտեսական նպատակահարմարությունից ելնելով, աստիճանաբար կստեղծվեն ագրարա-արդյունաբերական միավորումներ, որոնցում գյուղատնտեսությունը օրգանապես կզուգորդվի իր արտադրանքի արդյունաբերական վերամշակման հետ՝ գյուղատնտեսական և արդյունաբերական ձեռնարկությունների ռացիոնալ մասնագիտացմամբ և կոոպերացմամբ հանդերձ (տե՛ս ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Երևան, 1962 թ., էջ 506)։

Զարգացած սոցիալիզմի արդի էտապում արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացը, նպաստելով արտադրաուժերի զարգացմանը, աշխատանքի հասարակական բաժանման կատարելագործմանը և ձեռնարկությունների միջև արտադրական կապերի ընդլայնմանը, իր հետ բերում է կոոպերացիայի զարգացման նոր ձև՝ ագրարա-արդյունաբերական ձեռնարկություններն ու միավորումները։

Ագրարա-արդյունաբերական ինտեգրացիան, ըստ էության, կոոպերացիայի լենինյան գաղափարների իրականացման նոր էտապ է։ Մեր էկոնոմիկայում ագրարա-արդյունաբերական ձեռնարկությունների և միավորումների ծնունդը սոցիալիստական խոշոր տնտեսությունների կազմակերպման օրգանական շարունակությունն է, արտադրության հետևողական ինտենսիվացման ու մասնագիտացման կուրսի արդյունքը։ Դրանք նոր հնարավորություններ են ստեղծում բարձրացնելու գյուղի աշխատավորների կենսամակարդակը, կառուցելու նոր քաղաքատիպ բնակավայրեր, իրագործելու սոցիալ-տնտեսական այլ խնդիրներ։

Ագրարա-արդյունաբերական ձեռնարկությունների և միավորումների ստեղծումը սոսկ կազմակերպական միջոցառում չէ, այլ բխում է համապատասխան սոցիալ-տնտեսական նախադրյալներից և պահանջում է անհրաժեշտ նյութատեխնիկական բազա, արտադրաուժերի զարգացման համապատասխան մակարդակ, աշխատանքի հասարակական բաժանման ու արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման հետագա խորացում։

ՍՄԿԿ XXV համագումարում Կենտրոնական կոմիտեի հաշվետվության մեջ Լ. Ի. Բրեժնևը, անդրադառնալով գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման խնդիրներին, ասաց. «...ժամանակն է բարելավել, և այն էլ լրջորեն բարելավել, գյուղատնտեսության արտադրատնտեսական համագործակցությունը արդյունաբերության այն ճյուղերի հետ, որոնք անմիջականորեն կապված են նրա հետ, ապահովել միասնական, համապետական մոտեցում ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման նկատմամբ» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 86—87).

Վերջերս մամուլում հրապարակվեց ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Միջտնտեսական կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն է՛լ ավելի զարգացնելու մասին» որոշումը։ Այդ պատմական փաստաթուղթը տնտեսական-քաղաքական մեծ նշանակություն ունի։ Նրանում նշված է այն գլխավոր ուղղությունը, որով պետք է ընթանա մեր երկրի գյուղատնտեսությունը։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշման մեջ ընդգծված է, «...որ լայն կոոպերացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը, այն ժամանակակից ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելը սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման գլխավոր ուղղությունն է, զարգացած սոցիալիզմի պայմաններում լենինյան կոոպերատիվ պլանի գաղափարների պրակտիկ իրականացման նոր փուլը»։

Ներկայումս մեր երկրում հասունացել են ագրարա-արդյունաբերական ձեռնարկությունների և միավորումների կազմակերպման համար անհրաժեշտ



սոցիալ-տնտեսական պայմանները։ Դրանց կազմակերպումն իրագործվում է աստիճանաբար՝ հաշվի առնելով տվյալ տնտեսական շրջանի զարգացման հեռանկարները, նյութատեխնիկական բազան և արտադրաուժերի զարգացման մակարդակը։ Արդյունաբերության և գյուղատնտեսության կոոպերացման մեծ փորձ ունեն Բելոռուսական, Մոլդավական, Ուկրաինական հանրապետությունները, Մոսկվայի, Լենինգրադի, Ռոստովի, Վորոնեժի և ՌՍՖՍՀ մի շարք այլ մարզեր։ Եթե 60-ական թվականների սկզբին ՍՍՀՄ-ում կային շուրջ հազար միջկոլտնտեսային ձեռնարկություններ, կազմակերպություններ և միավորումներ, ապա 1975 թ. սկզբներին դրանց թիվը հասնում էր 5.733-ի, այդ թվում՝ ՌՍՖՍՀ-ում՝ 2.470-ի, Ուկրաինայում՝ 2.030-ի, Բելոռուսիայում՝ 200-ի, Ուզբեկստանում՝ 185-ի, Մոլդավիայում՝ 161-ի և այլն (տե՛ս Народное хозяйство СССР в 1974 г., М., 1975 г., стр. 430—431)։

Ագրարա-արդյունաբերական ինտեգրացիայի արդի փուլում գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում մեծ դեր ունի միջտնտեսային կոոպերացիան։ Այն հնարավորություն է ընձեռում արդյունավետ օգտագործելու մեքենայացված խոշոր արտադրության տնտեսական առավելությունները, կապիտալ ներդրումները, աշխատանքային, նյութական և ֆինանսական ռեսուրսները։ Կոոպերացման և մասնագիտացման պայմաններում մեծ երաշխիքներ են ստեղծվում արտադրության համակենտրոնացման բարձր մակարդակի ապահովման, ժամանակակից մեքենայական տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման համար, իսկ դրանք նպաստում են հասարակական աշխատանքի բաժանման խորացմանը և արտադրողականության հետագա բարձրացմանը։ Դա հաստատվում է գործող անասնապահական, թռչնաբուծական, կերի արտադրության խոշոր համալիրների, փակ բնահողի պայմաններում բանջարաբուծության և մյուս ճյուղերում արդյունաբերական հիմունքներով մասնագիտացված արտադրություն կազմակերպելու փորձով։ Այսպես, Մոլդավական ՍՍՀ-ում ներկայումս գործում են կապիտալ շինարարության, անասնապահության, կերի արտադրության, բանջարաբուծության, պտղաբուծության, ծխախոտագործության, խաղողագործության-գինեգործության ու այլ ճյուղերի ավելի քան 305 մասնագիտացված միջտնտեսային համալիրներ և միավորումներ։

Հանրապետության միջկոլտնտեսային կազմակերպությունների և միավորումների հիմնական ֆոնդերը կազմում են 717 միլիոն ռուբլի։ Միջկոլտնտեսային անասնապահական արտադրական կոմպլեքսներում աշխատանքի արտադրողականությունը 5—8 անգամ բարձր է, քան փոքր կոլտնտեսությունների ֆերմաներում։ Այգեգործական միավորումներում մրգի բերքատվությունը 3—4 անգամ բարձր է, քան կոլտնտեսություններում։

Մեր հանրապետությունում ներկայումս գործում են ընդամենը 26 միջտնտեսային ձեռնարկություններ, որոնցից հինգը՝ Շահումյանի շրջանում (խոզաբուծական, շինարարական, ջերմատնային, թռչնաբուծական և մեղվաբուծական)։ Միջկոլտնտեսային թռչնաբուծական ֆաբրիկան հիմնադրվել է շրջանի տասը կոլտնտեսությունների փայատիրական գումարների հաշվին։ Հիմնական արտադրական գործունեությունից ֆաբրիկան տարեկան ստանում է 60—100 հազար ռուբլու օգուտ, որի 40 տոկոսը բաշխվում է փայատեր կոլտնտեսություններին։ Հանրապետության կոլտնտեսային և սովխոզային թռչնաբուծական ֆերմաների համեմատությամբ, ֆաբրիկայում 24—25 տոկոսով բարձր է թռչունների մթերատվությունը, 2,1—2,5 անգամ՝ աշխատանքի արտադրողականությունը, իսկ արտադրանքի ինքնարժեքը ցածր է երկու տոկոսով։ 1975 թ. 1000 ձվի արտադրության համար շրջանի կոլտնտեսություններում ծախսվել է 21,2 մարդ-ժամ, իսկ ֆաբրիկայում՝ 17,6։ Շրջանում նույն սկզբունքներով 1965 թ. գործում է միջկոլտնտեսային խոզաբուծական ֆաբրիկան։ Կոլտնտեսությունների և սովխոզների խոզաբուծական ֆերմաների համեմատությամբ, ֆաբրիկայում մթերատվությունը բարձր է 1,5—1,6, աշխատանքի արտադրողականությունը՝ 2—2,5 անգամ, շահութաբերությունը՝ 40 տոկոսով։ Մեկ ցենտ-

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԳԼԽԱՎՈՐԸ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ՄԵՋ

**Ա. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ, հանրապետական քաղլուստան վարիչ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ աշխատանքային և քաղաքական բարձր ակտիվությամբ ձեռնամուխ է եղել ՍՄԿԿ XXV համագումարի նշած նոր հոյակապ խնդիրների լուծմանը: Տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրը, որը ձևակերպեց XXV համագումարը, կուսակցության կուրսի հետևողական կիրառումն է ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի ըստ ամենայնի բարձրացման համար՝ հանրային արտադրության դինամիկ և համամասնական զարգացման, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության աճի, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի համակողմանի բարելավման հիման վրա: ՍՄԿԿ XXV համագումարն ամենայն հստակությամբ մշակեց կուսակցության արտաքին քաղաքականության ծրագիրը, նշեց աշխարհում կայուն խաղաղության ամրապնդման ուղիները:

Իր հեղափոխական-վերափոխիչ ողջ պրակտիկ գործունեության ընթացքում կուսակցությունը հենվում է մարքսիզմ-լենինիզմի տեսության վրա, որը հնարավորություն է ընձեռում հասկանալու մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, ճիշտ կողմնորոշվելու ներքին և միջազգային իրադրության մեջ: Կոմունիստական շինարարության մեծ և բարդ խնդիրների առնչությամբ ավելի ու ավելի է աճում մարքս-լենինյան տեսության դերը՝ հասարակական կյանքի զարգացման բոլոր ասպարեզներում ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության մշակման գործում:

«Մասսաների քաղաքական դաստիարակության հաջողության չափանիշը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— իհարկե, կոնկրետ գործերն են: Կոմունիստական գաղափարայնությունը գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործողության համաձուլվածքն է» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., 1976, էջ 125):

Այժմ, երբ կուսակցությունը մոբիլիզացնում է սովետական հասարակության նյութական և հոգևոր ուժերը ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները կենսագործելու և կոմունիստական շինարարության ասպարեզում նոր բնագծեր նվաճելու համար, կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների



առաջնահերթ խնդիրն է ապահովել ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների ու նյութերի համակողմանի պրոպագանդումն ու խոր ուսումնասիրությունը, համագումարի գաղափարներով տոգորել յուրաքանչյուր կոմունիստի, կոմերիտականի, սովետական յուրաքանչյուր մարդու: «Առաջիկա ժամանակաշրջանում,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— կուսակցական լուսավորության մեր ամբողջ ցանցի գլխավոր խնդիրն է՝ կուսակցության XXV համագումարի որոշումների խոր ուսումնասիրությունը» (նույն տեղը, էջ 123):

Կուսակցության համագումարը բարձր գնահատեց քաղաքական լուսավորության դերը մարքսիզմ-լենինիզմի ոգով մարդկանց դաստիարակելու, համագումարի որոշումները կենսագործելու համար կոմունիստներին, կոմերիտականներին և անկուսակցական ակտիվիստներին մոբիլիզացնելու գործում: Այդ ասպարեզում կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների արդյունավետ աշխատանքի վկայությունն է այն փաստը, որ վերջին տարիներին ստեղծվել և ամրապնդվել է կուսակցական ու կոմերիտական ուսուցման ամբողջական համակարգ, որտեղ քաղաքական կրթություն են ստանում մեր երկրի միլիոնավոր աշխատավորներ: Միայն մեր հանրապետության կուսակցական լուսավորության ցանցում ընդգրկված է 150 հազար, իսկ կոմերիտական լուսավորության ցանցում՝ 190 հազար մարդ: Մարքսիզմ-լենինիզմի այսպիսի մասսայական ուսումնասիրությունը ՍՄԿԿ XXV համագումարը բնութագրեց որպես արդի փուլում հասարակական գիտակցության զարգացման կարևորագույն առանձնահատկություն:

Մեր երկրի զարգացման ներկա փուլում, ինչպես պահանջեց ՍՄԿԿ XXV համագումարը, անհրաժեշտ է, մի կողմից՝ շարունակել կոմունիստների, կոմերիտականների և անկուսակցական ակտիվիստների ավելի լայն զանգվածներ ներգրավել կուսակցական և կոմերիտական լուսավորության ցանցում, մյուս կողմից՝ հատուկ հոգատարություն դրսևորել քաղաքական ուսուցման բովանդակության խորացման, նրա գաղափարական-տեսական մակարդակի ու արդյունավետության բարձրացման ու ներգործունության ուժեղացման նկատմամբ:

ՍՄԿԿ Կենտկոմը քանիցս նշել է, որ կոմունիզմի կառուցման արդի փուլում գիտատեխնիկական առաջընթացի բարձր տեմպերի, էկոնոմիկայի և աշխատանքի բնույթի որակական փոփոխությունների առնչությամբ անշեղորեն աճել են պահանջները կադրերի, աշխատավորական լայն զանգվածների տնտեսագիտական կրթության նկատմամբ: «Է՛լ ավելի զարգացնելով տնտեսագիտական կրթությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում տված զեկուցման մեջ,— մենք պետք է հոգանք այն մասին, որ դա առավելագույն չափով նպաստի ամենուրեք աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձի տարածմանը, գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորմանը արտադրության մեջ» (նույն տեղը, էջ 128):

Ներկա պայմաններում, երբ ավելի է արագանում գիտատեխնիկական առաջընթացը, տնտեսագիտական պատրաստությունը հանդես է գալիս որպես տնտեսավարման գիտական մակարդակի բարձրացման կարևորագույն գործոն: Այս ասպարեզում մեր հանրապետությունը ևս ունի որոշակի հասումներ: Ընթացիկ ուսումնական տարում տնտեսագիտական կրթության սիստեմում ընդգրկված են 170 հազար բանվորներ, կոլտնտեսականներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ղեկավար կադրեր: Ավելի քան 60 հազար աշխատավորներ տնտեսական գիտելիքներ են ձեռք բերում կոմունիստական աշխատանքի դպրոցներում: Շատ աշխատավորներ տնտեսական գիտելիքներ են ստանում ժողովրդական համալսարաններում, մասնագիտական որակավորման և քաղաքական ու տնտեսագիտական կրթության մասսայական այլ օղակներում: Մեր հանրապետությունում տնտեսագիտական կրթության բոլոր օղակներում ներկայումս սովորում է 320 հազար մարդ:

Քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումն անընդհատ կատարելագործվում է: Մեր առաջնահերթ խնդիրն է ո՛չ միայն բարելավել ու կատարելագործել ուսուցման ձևերն ու մեթոդները, այլև խորացնել պարապմունքների բո-

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ

**Վ. Կ. ՄԵԼԻՔՅԱՆ**
Լենինականի հղկող հաստոցների գործարանի
կուսբյուրոյի քարտուղար

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ կուսկազմակերպության բարձրագույն օրգանն է։ Այն կոլեկտիվ ղեկավարության միջոց է ու կոմունիստների դաստիարակության դպրոց։ Այնտեղ քննարկվում և վճռվում են տվյալ կազմակերպության կյանքին ու գործունեությանը վերաբերող հրատապ խնդիրները։ Կոմունիստները ժողովներում լուծում են արտադրության նկատմամբ կուսակցական ղեկավարության բարելավմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, աշխատանքի գիտական կազմակերպմանը, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը, աշխատավորության կոմունիստական դաստիարակությանն առնչվող բազմաբնույթ հարցեր։

Լենինականի հղկող հաստոցների գործարանի կուսկազմակերպության բյուրոն և արտադրամասային կուսկազմակերպությունները, ղեկավարվելով «Յարոսլավլի քաղաքային կուսակցական կազմակերպությունում կուսակցական ժողովների անցկացման պրակտիկայի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջներով, ամեն կերպ ջանում են բարձրացնել կուսժողովների դաստիարակչական դերը, այն դարձնել հասունացած հարցերի լուծման, ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսակցական վերահսկողության իրականացման վճռական միջոց։ Այդ առումով մեզ մոտ կուսժողովը միշտ էլ կարևոր իրադարձություն է կոմունիստների համար և ուսանելի շատ բան է տալիս նրանց։ Այն վճռական դեր է խաղում կուսկազմակերպության անդամների կյանքում, նպաստում նրանց դաստիարակությանը, ակտիվության աճին։

«Յարոսլավլի քաղաքային կուսակցական կազմակերպությունում կուսակցական ժողովների անցկացման պրակտիկայի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ դրական երևույթ է համարվում կուսակցական ժողովներում կոմունիստների հաշվետվությունների ունկնդրումը։ Դրանով իսկ ստեղծվում է պատասխանատվության բարձրացման մթնոլորտ, ժողովականներն արժեքավորում են իրենց կոմունիստ ընկերոջ լավ գործերը, բացահայտում նրա աշխատանքի թերությունները, երևս առ երես ասում այդ մասին, նշում դրանց վերացման ուղիները։ Այդ ամենն օգնում է տվյալ կոմունիստին՝ բարելավելու գործերի վիճակը, շտկելու ու կանխելու սխալները և թերությունները։

Մեզ մոտ կոմունիստների հաշվետվությունների ունկնդրումը դարձել է պրակտիկա։ Այսպես, իրենց գործունեության մասին հաշիվ են տվել կենտրոնական լաբորատորիայի վարիչ Լ. Երանոսյանը, կադրերի պատրաստման ավագ ինժեներ Տ. Հովհաննիսյանը, ագիտատորներ Ռ. Ադամյանը, Վ. Հարությունյանը և ուրիշներ։ Նշելով նրանց աշխատանքի դրական կողմերը՝ ժողովականները միաժամանակ անկեղծ, ընկերական մթնոլորտում բացահայտել են թերությունները, դրանց վերացման համար արել գործնական առաջարկներ։

Ինչ խոսք, հաշվետվությունների քննարկումը տալիս է դրական արդյունք. բարձրանում է կոմունիստների, բոլոր կադրերի պատասխանատվությունը



վստահված գործի նկատմամբ։ Հետևաբար, հաշվետվությունների քննարկման առումով ևս կուսժողովը դառնում է դաստիարակության դպրոց, կոմունիստների ակտիվության բարձրացման և նախաձեռնության զարգացման լավագույն միջոց։

Հենց կուսժողովում, հարցերի քննարկման պրոցեսում են ծնվում շատ նախաձեռնություններ, ընդունվում արտադրության առաջընթացին նպաստող որոշումներ, մշակվում գործնական միջոցառումներ։ Ժողովը դրանով իսկ դառնում է հասունացած հարցերի լուծման կարևոր միջոց։ Այս առնչությամբ արժե հիշատակել մեր ժողովներից մեկը, որտեղ քննարկվեց արտասահման առաքվող հաստոցների արտադրության ու որակի վիճակը։

Հարցի բազմակողմանի նախապատրաստման նպատակով կուսբյուրոն ստեղծեց հանձնաժողով՝ գլխավոր ինժեների տեղակալ, կոմունիստ Ռ. Վարոսյանի գլխավորությամբ։ Մանրակրկիտ ուսումնասիրելով գործերի վիճակը՝ հանձնաժողովը կազմեց զեկուցագիր, որով և կուսժողովում հանդես եկավ նրա նախագահը։ Նշելով, որ գործարանի թողարկած 3Բ—12 հղկող հաստոցները և ԱԱ1 218 սառը նստեցման ավտոմատները մեծ պահանջարկ ունեն արտասահմանյան մի շարք երկրներում, ժողովականները միաժամանակ բացահայտեցին այն լուրջ թերությունները, որոնք բացասաբար են ազդում հաստոցների որակի վրա։ Մասնավորապես նշվեց, որ ցածր մակարդակով են կատարվում որոշ մեքենամասերի մշակման, հաստոցների հավաքման, հարդարման ու ներկման աշխատանքները։

Քննարկված հարցի առթիվ ժողովն ընդունեց կոնկրետ որոշում, մշակեց արտասահման առաքվող հաստոցների որակի բարձրացման միջոցառումներ։ Ստեղծվեց հանձնաժողով՝ դրանց կատարմանը հետևելու համար։ Ինչպես և սպասվում էր, արդյունքը գոհացուցիչ է. ժամանակին կատարվում են արտասահմանյան առաքումների առաջադրանքները, պատվիրատուները ստանում են անթերի, բարձրորակ արտադրանք։ Այդ հարցի քննարկումը ընդհանրապես բարերար ազդեցություն ունեցավ ձեռնարկության որակական ցուցանիշների վրա։

Տասներորդ հնգամյակում մեր գործարանի կոլեկտիվի կուսկազմակերպության առջև ծառացել են լուրջ խնդիրներ։ Մենք պետք է էականորեն բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը, ապահովենք հաստոցների արտադրության ծավալի նշանակալի աճ, բարելավենք դրանց որակը։ Այդ խնդիրների լուծման գործում չափազանց մեծ է նաև կուսժողովի դերը։ Ընթացիկ տարվա ապրիլին դռնբաց կուսժողովում քննարկեցինք 1976 թ. առաջին եռամսյակի պետական առաջադրանքների կատարման արդյունքները և կոլեկտիվի առաջիկա անելիքները։ Ժողովն արձանագրեց, որ կոլեկտիվը պատվով է կատարել ՍՄԿԿ XXV համագումարի պատվին ծավալված սոցիալիստական պարտավորությունները և բարձր ցուցանիշներով փակել առաջին եռամսյակը. իրացման պլանը գերակատարվել է 12 հազար, համախառն արտադրանքինը՝ 38 հազար ռուբլով։ Կոմունիստներ Գր. Բաղրամյանը, Հ. Հարությունյանը, Լ. Թորոսյանը, Է. Հակոբյանը իրենց աշխատանքով օրինակ են ծառայում կոլեկտիվի, հատկապես երիտասարդների համար։

Կուսժողովը հանրագումարի է բերում ոչ միայն աշխատանքային հաջողությունները, այլև ընդհանրացնում է լավ նախաձեռնությունները, կանաչ ճանապարհ բացում դրանց տարածման ու արմատավորման համար։ Այն միաժամանակ թերությունները վերացնելու ուղի է ցույց տալիս, միջոցներ նշում։ Այսպես, № 10 արտադրամասի պետ Ա. Խաչատրյանն իր ելույթում մտահոգություն հայտնեց, որ մեխանիկական արտադրամասը շատ հաճախ դետալները հավաքման արտադրամասին տրամադրում է ոչ ժամանակին, հիմնականում՝ տվյալ ամսվա երկրորդ տասնօրյակին, մի բան, որ գրոհայնության պատճառ է դառնում և բացասաբար անդրադառնում արտադրանքի որակի վրա։ Կոլեկտիվին, կուսկազմակերպությանը հուզող հարցեր արծարծեցին նաև № 13 արտադրամասի բանվոր Դ. Նիկողոսյանը, արտադրության բաժնի վարիչ Ս. Հակոբջանյանը և ուրիշներ։

Եզրակացությունը մեկն է. ինչպիսի հարց էլ քննարկելու լինի կուսժողովը,

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

# ՀԱՅՈՒՀՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԷՋԵՐԻՑ

*ԿԱՆԱՆՑ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՄԱՔԱՌՈՒՄՆԵՐԸ դարավոր պատմություն ունեն, սակայն երբեք չեն պսակվել արմատական հաջողությամբ, որովհետև դրանք հակասել են սոցիալական կեղեքման վրա խարսխված անտագոնիստական հասարակարգի իշխող դասակարգերի շահերին։*

*Հասարակական զարգացման պատմությունն առհասարակ և Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակը մեր հայրենիքում հատկապես, ապացուցեցին, որ կնոջ լիակատար ազատագրումը հնարավոր է լոկ պրոլետարական սոցիալիստական հեղափոխությամբ։ Մի պրոբլեմ, որի գիտական ու համակողմանի տեսական լուծումը գտնում ենք մարքսիզմ-լենինիզմի դասականների երկերում ու այդ նպատակով նրանց կատարած պրակտիկ վեհ գործերում։ Հիրավի, հազարամյակների ընթացքում առաջին անգամ, արմատապես և մեկընդմիշտ կնոջ ազատագրումն իրականացավ Սովետական Ռուսաստանում, ՍՍՀՄ-ում։*

*Հայտնի է, որ կապիտալիստական հասարակարգը կնոջը ներառնում է նյութական արժեքների արտադրաոլորտը, ուր և առավել ակնհայտ է դառնում նրա ու տղամարդու անհավասարության հարցի սոցիալական էությունը։ Սակայն պետք է և նկատի առնել կնոջ կենսագործունեության մեջ եղած այն առանձնահատկությունը, որը բխում է կնոջ բնախոսական վիճակից։ Դա հասարակության համար նրա հույժ կարևոր մայրության ֆունկցիան է։*

*Մարքսի և Էնգելսի մահից հետո, կանանց ազատագրման մարքսիստական տեսության հետագա զարգացումը կապվում է Լենինի անվան հետ, առնչվում սոցիալիստական շինարարության պրակտիկ խնդիրների իրականացմանը։ Հանդես գալով կապիտալիզմի զարգացման բարձրագույն փուլում, պրոլետարիատի դասակարգային պայքարի ամենաբուռն շրջանում, Վ. Ի. Լենինը մեծագույն խորաթափանցությամբ գտնում էր, որ սոցիալիստական հեղափոխության մոտալուտ հաղթանակը կնոջ սոցիալական ազատության նվաճման երաշխիքն է։ Սոցիալ-դասակարգային բնույթի այդ հարցի լուծումը՝ կնոջ ազատագրումը, նա համարում էր պրոլետարիատի դասակարգային կռվի բաղկացուցիչ մասը։ Պրոլետարիատի հանճարեղ առաջնորդն աշխատավոր կնոջը զինում էր պայքարի նպատակների ու խնդիրների հստակ գիտակցությամբ. կանանց բանվորական շարժման գլխավոր նպատակն է պայքարը կնոջ տնտեսական ու սոցիալական հավասարության համար և ո՛չ միայն ձևական հավասարության,— գրել է Լենինը,— միայն սոցիալիզմի, որպես հասարակական միանգամայն նոր, շահագործումից զերծ հասարակարգում է հնարավոր կնոջ լիակատար ազատագրումը (տե՛ս Երկեր, հ. 30, էջ 520)։*

*Մեր նպատակն է սույն հոդվածում խիստ համառոտակի լուսաբանել հայ կնոջ ազատագրական պայքարի պատմական մի քանի ելևէջներ անցյալ դարում և մեր դարասկզբին։*

*Կնոջը ֆեոդալական կապանքներից ազատագրելու համար մղված պայքարը գաղափարախոսության մեջ արտացոլվում է որպես պայքար կղերաֆեոդալական իրավական ու բարոյական նորմերի դեմ, որպես իրենց ժամանակն ապրած սովորույթների մերժում։ Նեղ կենցաղային բնույթ չէր կրում հայուհու դրության և նրա ազատագրության ուղիների հարցը. այն շոշափում էր հասարակության կենսական շահերը՝ որպես պատմական անհրաժեշտության դրսևորում։*

*Լուսավորիչ Մ. Թաղիադյանը գտնում էր, որ անհրաժեշտ է կնոջ համար հնարավորություններ ստեղծել գիտություններին հաղորդակցվելու, ձևավորելու նրա աշխարհայացքը՝ զինելով նրան առաջավոր մտածելակերպով. «Արժան և հարկ է կրթել զօրիորդս,— ժամանակակիցներին կոչ էր անում նա,— մեր յուսմանս պէսպէս և պիտանի գիտությանց։ Զի... գիտությունն է պերճությունը հոգվո...»* (Ծառ դաստիարակութեան օրիորդաց, *Կալկաթա, 1847, էջ 8)։*

*ՀԱՅ ԿՆՈՋ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ մղված պայքարի պատմության մեջ իր պատվավոր տեղն ունի Խ. Աբովյանը։ Իր ժողովրդի ցավերով ապրող դեմոկրատ-լուսավորչի սիրտը խոցում է այն իրողությունը, որ քայքայվում է ընտանիքի բարոյական հիմքը, որովհետև «Բոլորն էլ փողի ծարավ են զգում, փողի համար էլ ամուսնանում»։ Նա ջանում էր երիտասարդության բարոյական համոզմունքների ձևավորումը տանել ճիշտ ուղիով։ Խ. Աբովյանը բացահայտում է սիրո բարոյական արժեքը։ Եթե իրական է այն, ապա նոր բովանդակությամբ է հարստացնում մարդու կյանքը։ Առանձին քնքշությամբ կերտած Մարիամի, Նազլուի կերպարների միջոցով Աբովյանն իր համակրանքն է արտահայտում ճնշված, իրավազուրկ կնոջ նկատմամբ։ Հանձին Աբովյանի՝ կինն ունեցավ իր իրավունքների ամենաեռանդուն պաշտպանին։ Նրա ստեղծագործությունը դաստիարակչական վիթխարի ներգործություն ունեցավ՝ հուշակելով բարոյական կենսահաստատ գաղափարներ։*

*Հատկանշական է, որ XIX դարի սկզբում հիմնականում արծարծվում էր իգական սեռի* բարոյական դաստիարակության, նրա կրթության *պահանջը՝ կնոջ ազատագրության հարցի էական կողմերից մեկը. դեռևս չէր հասունացել հասարակական արտադրական աշխատանքում կնոջ աշխատանքը մեծ չափերով օգտագործելու խնդիրը։*

*Կնոջ իրավունքների, նրան հասարակական ասպարեզ հանելու հարցերը Մ. Նալբանդյանի, Հ. Սվաճյանի ստեղծագործություններում արծարծված են դեմոկրատական հումանիզմի դիրքերից։*

*Իրեն հատուկ խիզախությամբ Մ. Նալբանդյանն իր գրչով մաքառում էր հանուն այն բանի, որ հայ կինը՝ որպես հասարակության իրավահավասար անդամ, զբաղեցնի իրեն պատկանող տեղը։ Մ. Նալբանդյանը գտնում է, որ կինն ունակ է աշխատելու և՛ կենցաղային ոլորտում, և՛ հասարակական հանրօգուտ գործունեության ասպարեզում։ Իհարկե, նա չի անտեսում մայրության ֆունկցիայի սոցիալական իմաստը, բայց դա կնոջ գործունեության միակ ֆունկցիան չէ։ Նա գտնում է, որ դաստիարակության ճիշտ մեթոդների կիրառմամբ կնոջը հարկ է համակել քաղաքացիական պատասխանատվության զգացումով։ Մեծապես կարևորելով աշխատանքի շնորհիվ տղամարդուց կնոջ անկախության ձեռքբերման գործը՝ դեմոկրատական շարժման գաղափարական առաջնորդը աշխատավոր կնոջ հետ է կապում ժողովրդին ծառայելու իդեալների իրականացումը։ Մ. Նալբանդյանը թշնամի էր իգական սեռի ընդունակությունները ու եռանդը կաշկանդող ամեն մի նախապաշարմունքի, հետամնացության, միաժամանակ դրվատում էր առաջընթացի ճանապարհին կնոջ կատարած յուրաքանչյուր քայլը։*

*Օժտված լինելով հրապարակախոսական փայլուն տաղանդով, Հ. Սվաճյանը ևս քննադատում է ֆեոդալական իրավակարգը, ուր ոտնահարվում են կնոջ պատիվն ու արժանապատվությունը։ Նա ոչնչացնող ծաղրի է ենթարկում հոգևորականության շահամոլությունը, նրա սկզբունքը, թե «ստակ չունիս մի՝ սիրելու ալ իրավունք չունիս»։ Նա գիտակցում է, որ կնոջ և ընտանիքի վերաբերյալ եվրոպական առաջավոր ժողովուրդների գաղափարները չէին կարող միանգամից թափանցել և անմիջապես կենսագործվել հայ իրականության մեջ, որտեղ պատմական և կենցաղային պայմաններն այլ էին։*

*Հայ իրականությունում ևս ֆեոդալական բարոյականությունն ու կրոնը քարոզում էին, թե կինը հոգևոր առումով թերարժեք է, միայն ընտանիքն է նրա բնական կոչման ասպարեզը:*

*Լինելով խոշոր արվեստագետ, Րաֆֆին, բնականաբար, չէր կարող իր կարծիքը չունենալ հայ միտքը հուզող հասարակական այդպիսի կարևոր խնդրի վերաբերյալ: Այս առումով առանձնապես հետաքրքրական է նրա՝ նշված ուսումնասիրությունը, որտեղ ռեալիստորեն է արտացոլված հայ կնոջ կենցաղը: Նա ցավով է նշում, որ աշխատավորական ընտանիքում ուշադրություն չի նվիրվում աղջկա կրթությանն ու դաստիարակությանը, միայն տնային տնտեսությամբ է զբաղվում նա: Իսկ սեռերի փոխհարաբերությունները կարգավորվում են ամենազոր սովորույթի ուժով: Ամուսնության ժամանակ տղայի ու աղջկա զգացմունքն ամենևին հաշվի չի առնվում: Կնոջից պահանջվում է անտրտունջ կրել ընտանեկան լուծը: Ցավոք, Րաֆֆին միակողմանի է արծարծել կնոջ ազատագրման հարցը:*

*Բացի Րաֆֆուց, իրենց ստեղծագործություններում կնոջ, նրա ազատագրության հարցին ամենատարբեր ձևերով անդրադարձել են մեր այնպիսի գրողներ, ինչպիսիք են՝ Ղ. Աղայանը, Գ. Սունդուկյանը, Ս. Տյուսաբը, Շիրվանզադեն, Տ. Կամսարականը, Նար-Դոսը, Գ. Զոհրապը և ուրիշներ: Սակայն մեր նպատակը չէ այստեղ անդրադառնալ նրանց ստեղծագործություններին:*

*1872 Թ. Կ. ՊՈԼՍՈՒՄ ԼՈՒՅՍ ՏԵՍԱՎ Գ. Պաղտասարյանի* Գաղտնիք ամուսնութեան *գրքույկը, որը թեև բժշկական բնույթի էր, բայց դրա էջերում քննարկվում էին սեռերի միջև անձնական հարաբերությունների կարգավորման նաև բարոյական կողմերը: Այդ հարցերին է նվիրված Եպրուհի Նաքաշյանի* Նամականի կամ նվէր ուսանող և ուսանողուհյաց *(Պոլիս, 1877) գրվածքը... Դեռևս 70-ական թվականներին Ս. Երիցյանը կազմում է «Տոմար ընտանեկանը» (Թիֆլիս, 1874 թ.), որը կարևոր է վիճակագրական առումով:*

*XX դարի սկիզբը, որ նշանավորվեց դասակարգային մարտերով, նախապատրաստում էր այդ հարցի ավելի արմատական վերանայում նաև հայ իրականության մեջ: Պատմական նոր պայմանների օբյեկտիվ ընթացքն արտացոլվում է տղամարդու և կնոջ հավասարության թեման արծարծող ուսումնասիրություններում, որոնցում վեր են հանվում այդ հարցի նոր կողմեր— տնտեսության մեջ կնոջ աշխատանքի կիրառում, աշխատանքի հավասար վարձատրության, մայրության պաշտպանության պահանջներ: Այդ ուսումնասիրություններն ունեն պրոբլեմային այսպիսի բաժանում՝ իգական սեռի կրթության ու բարոյական դաստիարակության, հասարակական արտադրությանը կնոջ անմիջական մասնակցության խնդիրները:*

*Հայ կնոջ ուսման և դաստիարակության հարցերն արծարծված են գիտական շրջաններում իր աշխատություններով ճանաչված Վ. Արծրունու* Աղջիկ *առողջապահական-բարոյագիտական բնույթի ստեղծագործության մեջ: Հեղինակի համար ակնհայտ է գիտելիքների ուսուցման համակարգի անհամապատասխանությունը կյանքի պահանջմունքներին: Սխալ հիմունքի վրա է դրված իգական սեռի կրթությունը: Կա՛մ բոլորովին անուշադրության է մատնվում, կա՛մ անբնական, կեղծ ուղղություն է ստանում նրա բարոյական դաստիարակության գործը: Ըստ Վ. Արծրունու, աղջկա դաստիարակությունն ունի հասարակական նշանակություն: Հոգևոր արժեքների ստեղծմանն իգական սեռը կարող է մասնակցել երեք վճռական գործոնների միասնությամբ— ընտանիք, դպրոց, միջավայր: Սակայն, «Ո՛չ ընտանեկան կյանքը, ո՛չ դպրոցական շրջանը և ո՛չ հասարակական վերաբերման ձևը դեպի աղջիկը ընդունակ չեն զարգացնելու նրա մեջ այն ֆիզիկական ու հոգեկան հատկությունները, որոնք առհավատչյա են թե՛ նրա անձնական բարօրության և թե ազգի բարգավաճման:*

*Այնինչ աղջիկը պիտի կազմի ազգի սյունը...» (Վ. Արծրունի,* Աղջիկ, *Թիֆլիս, 1903, էջ 3):*

*Ըստ Արծրունու, մեծ է աղջկա բարոյական դաստիարակության նշանակությունը, քանի որ չկան կնոջ հանրօգուտ գործունեության շարժառիթներ: Ամեն տարի լայնորեն բացվում են օրիորդաց դպրոցի դռները, իսկ ավարտողներից հասարակությունն սպասելիք չունի: Արծրունին պնդում է, որ դաստիարակությունն է աղջկան այդպիսին դարձնում. մինչ նրա հոգում կան գործելու ցանկություն, ներթաքուն ուժեր, որոնք պետք է ի հայտ բերել ու ծառայեցնել հասարակության շահերին: Նրա հայացքներում ուշագրավ մտքեր կան ֆիզիկական ու հոգևոր դաստիարակության միասնության, ազգային ավանդույթների օգտագործման վերաբերյալ:*

*Արծրունու ուսումնասիրության մեջ ուշագրավն այն է, որ նա վավերացնում է նախնադարյան-համայնական կարգերում նշմարվող անհավասարության դրսևորումները սեռերի հարաբերություններում:*

*Վ. Արծրունու գրքույկում զգալի տեղ է հատկացվում ստրկատիրական հասարակարգում կնոջ հանդեպ եղած իրավա-բարոյական հասկացություններին: Աղջիկը պահվում է իբրև վաճառքի ապրանք կամ տնային բանվորական ուժ և բանվորի ապագա մայր. ահա նրա տեսական եզրակացությունների արդյունքը:*

*Գրքույկի հեղինակն ուշադրություն է հատկացնում նաև այն հանգամանքին, որ բարոյական դաստիարակությունը հիմնվում է կրոնական սկզբունքների վրա: Միջին դարերի երկարատև ժամանակաշրջանը խիստ բացասաբար անդրադարձավ իգական սեռի մտավոր ու ֆիզիկական զարգացման վրա: Մոռացվեց դասական երկրների կրթական սքանչելի համակարգը: Աղջիկները փակվեցին կա՛մ տանը, կա՛մ մենաստանների դպրոցներում՝ զրկված անհրաժեշտ ազատությունից: Կամքի, ինքնուրույնության ամենաթույլ արտահայտությունն իսկ արգելված էր:*

*Ուսումնասիրելով «կնոջ հարցի» պատմությունը՝ Վ. Արծրունին գտնում է, որ կինը ոչ մի դարաշրջանում չի համակերպվել, այլ բողոքել է տղամարդու իշխանության դեմ:*

*Կնոջ կրթության ու դաստիարակության գործը նա համարում է հասարակական կարևոր խնդիրներից մեկը: Միջնակարգ ու բարձրագույն կրթություն ստացած օրիորդներն իրենց հետ ընտանեկան հարկ են տանում դաստիարակության ու կրթության նոր ձևեր: Կինը, գրում է Արծրունին, աշխատանքի ընթացքում համագործակցում է տղամարդու հետ: Լինելով բժիշկ, նա առաջարկում է կարգավորել կնոջ աշխատանքը՝ հաշվի առնելով նրա բնախոսական առանձնահատկությունները: Արծրունին նկարագրում է մեքենայական արտադրության հարուցած բարոյական ավերածությունը, որը կնոջը մատնեց «զազրելի ինքնավաճառման»: Աղքատության ճիրաններում հեծող ծնողներն իրենց դեռահաս աղջիկներին մղում են դեպի անվայել կյանք, ամուսնացնում նրանց պատահականորեն, որպեսզի «շուտ հեռացնեն տնից այդ անպետք ծանրոցը»: Հետևանքը՝ վաղաժամ ամուսնություն, որը ծանր է անդրադառնում սեռերի նորմալ ձևավորման վրա: Ըստ Վ. Արծրունու, կնոջ ստրկության պատճառը «տընտեսական սնանկությունն է»: Ելքը նա համարում է հասարակության կառուցվածքի վերափոխումը, որը մշտական աշխատանքով կապահովեր բանվորին ու գյուղացուն:*

*Վ. Արծրունու մոտ երբեմն անտեսվում է բարոյական երևույթների սոցիալական պայմանավորվածության սկզբունքը:*

*XX ԴԱՐԻ ՍԿԶԲԻՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ հայ հասարակական միտքը ևս բևեռեցին «կնոջ հարցի» վրա: Հայաստանում և նրա սահմաններից դուրս տպագրվեցին Ա. Բուդաղյանի, Ա. Ղլտճյանի, Ն. Հերթևցյանի և այլոց գործերը: Լինելով տարբեր գաղափարախոսության ներկայացուցիչներ՝ նրանց բարոյագիտական պատկերացումների վրա իր դրոշմն էր թողնում հայ կյանքի հետամնացությունը: Եվ պատահական չէ, որ 1901 թվականին Թբիլիսիում հրատարակվում է հոգևորականության շահերն արտահայտող Տ. Մարաղյանի* Կանացի խնդրի առթիվ *գրքույկը: Հեղինակը հարձակվում էր կանանց ազատագրության ամեն մի դրսևորման դեմ, տարփողում էր կնոջը նվաստացնող, մինչև կենդանական էակի աստիճանին իջեցնող հայացքները, դուրս մղելով նրան հասարակական կյանքի ոլորտներից:*

*Մեզ հետաքրքրող հարցի տեսանկյունից ուշադրություն է գրավում Սոֆիա Դանիելբեգյանի* Կանանց հարցը և նրա ծագելու պատճառները *(Թիֆլիս, 1906)*

Նոր մարդու լինելիության ճանապարհին

# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՍՈՎԵՏԱՀԱՅ ՄԱՆԿԱ-ՊԱՏԱՆԵԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Խ. Մ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Ինչպես ողջ սովետահայ գրականությունը, մանկապատանեկանը ևս պատմական յուրաքանչյուր ժամանակահատվածում արձագանքել է ժամանակի ամենահրատապ խնդիրներին, նպաստել մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակությանը: Այս տեսակետից բացառություն չեն կազմում ո՛չ երկրի տնտեսության վերականգնման ու վերակառուցման տարիները, ո՛չ Հայրենական պատերազմի ժամանակաշրջանը և ոչ էլ հետպատերազմյան տասնամյակները:

Հայտնի է, որ մանկապատանեկան գրականությունն ունի նաև այնպիսի կողմեր, որոնք պայմանավորվում են իրենց իսկ՝ ընթերցողների տարիքային առանձնահատկություններով: Այսպես, եթե կրտսերներին հասցեագրվող գրականության մեջ առաջնայինը կրթական-ուսուցողականն է, իսկ դաստիարակչականը հանդես է գալիս ավելի նուրբ ու միջնորդված ձևերով, ապա միջին ու բարձր տարիքի երեխաների համար գրված երկերում հակառակն է (նկատի չունենք գիտահանրամատչելի գրքերը): Ուստի, մանկապատանեկան գրականությունը գնահատելիս պարտավոր ենք գրականությանը ներկայացվող ընդհանուր պահանջներից բացի հաշվի առնել նաև առանձնահատուկ պահանջները:

Այս տեսակետից ի՞նչ կարելի է ասել ժամանակակից հայ մանկապատանեկան գրականության վերաբերյալ:

Առաջին տպավորությունն այն է, որ մանկական գրականություն ասելով՝ մեր գրողներից ու գրականագետներից շատերը նկատի ունեն բացառապես նախադպրոցականների ու կրտսեր դպրոցականների համար գրվող գրքերը: Օրինակ. 1971 թվականին «Հայաստան» հրատարակչության մանկապատանեկան բաժինը լույս է ընծայել 60 անուն ինքնուրույն գիրք: Դրանցից մոտ քառասունը հասցեագրված են կրտսերներին: Մնացածն էլ մեծ մասամբ կա՛մ դասական գրականության նմուշներ են, կա՛մ մատչելի են միայն բարձր դասարանների աշակերտներին:

Դրա արտահայտությունն է նաև այն, որ մեր պլաններում ինքնուրույն գրքերի թիվը միշտ էլ գերազանցում է թարգմանականին, բայց քանի որ ինքնուրույնները (մեծ մասամբ կրտսերների համար) բարալիկ գրքույկներ են, ավելի քիչ տպագրական մամուլ են կազմում, քան թարգմանականները: Օրինակ, 1975 թ. պլանավորվել է 68 անուն ինքնուրույն և միայն 36 անուն թարգմանական գիրք: Բայց ահա ինքնուրույն գրքերի ընդհանուր ծավալը 240 մամուլ է, իսկ թարգմանականներինը՝ 305: Խնկո Ապոր անվան հանրապետական մանկական գրադարանի լույս ընծայած հայ մանկական ու թարգմանական գրականության եռահատոր բիբլիոգրաֆիայում ավելի ցայտուն է դրսևորվում այս փաստը:

Վերջին մի քանի տարում միջին տարիքի ընթերցողների համար հրատարակված գրքերի թիվը չի անցնում երկու տասնյակից: Էլ չենք ասում, որ դրանց զգալի մասը կա՛մ մեր անվանի բանաստեղծների ու արձակագիրների՝



մատչելի երկերն են, կա՛մ հույժ կարևոր, գուցե և շատ հետաքրքրական, դյուրըմբռնելի գիտական աշխատություններ, որոնք գեղարվեստական երկերի հավակնություն չունեն: Այդպիսիք են, օրինակ, Կամսար Ավետիսյանի աշխարհագրական զրույցները:

Չորսից վեցերորդ դասարանների աշակերտներն ստիպված են ընթերցանության ծարավը հագեցնել առավելապես դասական, թարգմանական, կամ տարիներ առաջ տպագրված ինքնուրույն գեղարվեստական երկերով: Բարեբախտաբար չեն հնանում Ստ. Զորյանի Մի կյանքի պատմությունը, Խուժան Արշոն, Սև Սեթոն, Մ. Արմենի Կարմիր և կապույտ փողկապները, Մ. Շաթիրյանի Գարունը նորից եկավ, Մ. Կորյունի Կամոն, Հ. Ղուկասյանի Հասանի օրատետրը, Փոքրիկ վրիժառուները, Էդ. Ավագյանի Մենք ապրում ենք Կոնդում, մեր մանկական պոեմները և, անշուշտ, Վ. Անանյանի աչքի ընկնող բանաստեղծների մի քանի ողջ ստեղծագործությունը:

Միջին տարիքի երեխաների համար ստեղծվող ինքնուրույն գրականության սակավությունը փոքր թերություն չէ, քանի որ առավելապես այդ տարիքում, պիոներական կազմակերպության մեջ և դպրոցում է ձևավորվում մարդու բնավորությունը: Պատանեկան ռոմանտիկան այդ տարիքում դառնում է լուսավոր երազանք ու սխրագործության ձգտում, և երեխային համակում են հանրօգուտ աշխատանքի անհրաժեշտության գիտակցությունը, ժողովուրդների բարեկամության ու հումանիզմի պայծառ զգացումները, սովետական մեծ հայրենիքի գաղափարը, այս բոլորի հետ նաև բնափոխական, մինչ այդ անծանոթ երևույթներ: Պատանու հասարակական հայացքներն ու գործելակերպը մեծ չափով պայմանավորված են նրանով, թե գեղարվեստական գրականությունը, ինչպես և արվեստի մյուս ճյուղերը, ինչպե՛ս կբավարարեն նրա բնական հետաքրքրությունը, ի՛նչ ուղղություն կհաղորդեն նրա հակումներին, կկարողանա՞ն պատասխանել նրա հազար ու մի «ինչուներին»:

Մանկական գրականության ոլորտում նկատվող թերությունների զգալի մասը հետևանք է ինչպես այդ գրականության սպեցիֆիկ պահանջների թերիմացության, նույնպես և անցյալի ավանդներն ստեղծագործաբար յուրացնելու անկարողության:

Ակնբախ է մեր հասարակական կյանքի, գիտության ու տեխնիկայի առաջընթացը. նորը, առաջավորը թափանցել են մեր կյանքի բոլոր ոլորտները, վերափոխել մարդկանց կյանքի ու աշխատանքի պայմանները. այդ ամենն անդրադարձել է մարդու վրա, դարձրել նրան նորանոր հայտնագործությունների հեղինակ, դրանց իրականացման ակտիվ մասնակից: Ահա ինչու մեր այսօրվա մանկապատանեկան գրականության հերոսները պետք է լինեն ոչ թե յոթգլխանի հրեշներին, դժոխապան քուրմերին հաղթող գյուղացին, արքայազուններն ու թագուհիները, բարի ու մանկամիտ արքայադուստրերը, այլ նոր մարդիկ՝ տիեզերագնացը, հայրենիքի հզորությունն ամրապնդող գիտնականը, գործարանի, կոլտնտեսային դաշտերի առաջավորները, մեր վիթխարի կառույցների մասնակիցները... Հեղափոխության շատ կորովի մասնակիցներ, քաղաքացիական կռիվների, Հայրենական պատերազմի շատ հերոսներ դեռևս իրենց տեղը չեն գտել մանկագիրների արձակ կամ չափածո գործերում: Ցավալի է, որ մեր գրողներն այդպես մոռացության են մատնել պատանի հանդիսատեսի թատրոնը, մինչդեռ վաղուց զգացվում է այդ թատրոնի խաղացանկը այժմեական թեմաներով հարստացնելու, մեր օրերի հերոսներին բեմ հանելու կարիքը: Պատանիներն ու աղջիկներն ուզում են գրական ստեղծագործություններում, բեմում տեսնել իրենց ժամանակակցին, իրենց հասակակիցներին, ավագ սերնդի օրինակելի ներկայացուցիչներին... Այդ հերոսների միջոցով պետք է մանուկներին համակել հայրենասիրության, աշխատասիրության, մարդասիրության ոգով, դաստիարակել ազնիվ, հայրենանվեր քաղաքացիներ:

Բնությունը, բնության պահպանության հարցն այսօր մարդկությանը հուզող ամենահրատապ, կարևոր խնդիրներից է, որի համար մարդը պետք է հոգա, հոգալ սովորի մանուկ հասակից: Մանկագիրների առաջնահերթ խնդիրներից մեկը պետք է լինի նաև հոգատար, սրտացավ վերաբերմունք սերմանել, սեր ներշնչել բնության հրաշալիքների, հարստությունների, բուսական ու կենդանական աշխարհի նկատմամբ:

Սիրո՞ւմ ես անտառը՝ հավաքի՛ր թղթաթափոնը, սիրո՞ւմ ես գիրքը՝ հանձնի՛ր թղթաթափոնը, գնի՛ր ուզածդ գիրքը— այս մտքերը ևս կարող են լինել մանկական գրքաշարերի վերնագրեր:

Փոխվել են ժամանակները, փոխվել են և պահանջներն ու գրողների խնդիրները, որոնց համապատասխան և պետք է ընտրվեն հերոսները, ներկայացվեն նրանց գործելակերպը, մարդկային հարաբերությունները:

Ինչպես միշտ, առակը, այլաբանությունը եղել և մնում են հասարակության, մարդկային արատների վերհանման, խարազանման գրական լավագույն, երբեք չժանգոտող զենքերից մեկը: Այն պետք է լայնորեն օգտագործվի և

մեր օրերում, մեր ժամանակի արատները ձաղկելու, դրանց վերացման նպատակով: Դրանք պետք է ծառայեն այնպիսի չարիքների վերացմանը, ինչպիսիք են՝ ծուլությունը, երկերեսանիությունը, կեղծավորությունը, ընչաքաղցությունը... Մեր մանկագիրների գործերում անպայման պետք է պատժվեն այդ արատները կրողները, որով և հեղինակները կհասնեն իրենց դաստիարակչական նպատակին— կմղեն մանկանը՝ բռթափելու պարսավելին, անմարդկայինը, դառնալու մեր երկրի ազնիվ, աշխատասեր քաղաքացիներ:

Սակայն մեր մանկագրության ասպարեզում չարի ու բարու բախումը դեռևս շատ հաճախ արտացոլվում է նույն ձևերով, նույնիսկ լեզվաոճական նույն շինանյութով, ինչ հարյուր տարի առաջ: Գրվում են Աղայանի, Թումանյանի, Խնկոյանի հեքիաթների, առակների, զրույցների չափածո և արձակ նմանողություններ և ցավալին այն է, որ այդպիսիք հրատարակում են ո՛չ միայն ավագները, որոնք երբեմն չեն կարողանում ձերբազատվել իրենց մանկության տպավորություններից, այլև երիտասարդները: Ուշադրություն դարձնենք, թե ինչպիսին են իրականում տատերն ու պապերը. հեղափոխության տարիներին կամ դրանից մի տասնամյակ առաջ ծնված, կրթված ու ժամանակակից մարդիկ են, մինչդեռ մեր մանկական երկերում՝ բանաստեղծություններում, պատմվածքներում, նրանք հաճախ ներկայացվում են փափախավոր, հավերժական չիբուխը բերաններին, բարու հնամենի խրատը շուրթերին, բահով փորում են, չգիտես, հանրայի՞ն այգին, թե՞ իրենց տնամերձը: Տատերը, որպես կանոն, գլխաշորերով են, ճախարակ կամ իլիկ են մանում, թուխս են դնում և, իհարկե, չիր ու չամիչ բաժանում սիրեցյալ թոռնիկներին...

Այս խնդրում հաճախ մեր նկարիչներն էլ ետ չեն մնում գրողներից:

ԱՐԴԻ ՍՈՎԵՏԱՀԱՅ մանկապատանեկան գրականությունը բնութագրելուց առաջ ուզում ենք արձանագրել մի ուրախալի փաստ. բավականին ստվարացել է մանուկների համար գրող հեղինակների ցանկը: Նախորդ տասնամյակներում արդեն հայտնի տարեց ու միջին սերնդի շատ հեղինակների՝ Վախթանգ Անանյանի, Խաչիկ Հրաչյանի, Վալտեր Արամյանի, Մկրտիչ Կորյունի, Արշավիր Դարբնու, Հովհաննես Ղուկասյանի, Վիկտոր Վարդանյանի, Վազգեն Տալյանի, մեր գրեթե միակ մանկական դրամատուրգ Ազատ Շահինյանի և այլոց անունների կողքին այժմ տեսնում ենք և նորերը— Վռամ Հովսեփյան, Ժիրայր Ավետիսյան, Կառլեն Գևորգյան, Քաջիկ Գրիգորյան, Վարուժան Նալբանդյան, Կամարի Տոնոյան, Վազգեն Առաքելյան, Լևոն Մանուկյան, Յուրի Սահակյան, Անահիտ Պարսամյան, Վահրամ Թաթիկյան և շատ ու շատ այլ հեղինակներ: Մանուկներին չեն մոռանում, այսպես կոչված, ոչ զտարյուն մանկագիրները՝ Գարեգին Բեսը, Պարույր Միքայելյանը, Զարզանդ Դարյանը, Ռաֆայել Արամյանը, Նանսեն Միքայելյանը, Միքայել Հարությունյանը, Սարգիս Խարազյանը, Զորայր Խալափյանը, Վահագն Կարենցը և ուրիշներ:

Բազմազան են կրտսեր տարիքի համար ստեղծվող գրականության թեմատիկան, բովանդակությունը— բնություն, բուսական ու կենդանական աշխարհ, բարոյախրատական մոտիվներ, առակներ, հայրենիք, տուն, մանկապարտեզ, դպրոց:

Մաքսիմ Գորկին մանուկների համար պահանջում էր պարզ, սրամիտ, ուրախ գրքեր ըստեղծել: Մեր լավագույն մանկական ստեղծագործություններում հաճախ են դրսևորվում սյուժեի պարզությունը, սրամտությունն ու զվարթությունը, հումորն ու բանաստեղծության անակնկալ-նովելային վերջաբանը, որ մի տեսակ եզրափակում է ասելիքն ու մնում երեխայի հիշողության մեջ:

Կրտսերներին հասցեագրված երկերում ոչ մի բան չի կարող լինել, կամ չպիտի լինի հասարակ, ընդհակառակը, ամեն ինչ պետք է լինի զարմանալի, հրաշալի, հեքիաթային: Փոքրիկ երեխան ասֆալտի վրա կավճով շուն է նկարում ու, միաժամանակ, կարող է վախենալ ասֆալտի վրա նկարած շնից: Նա զրուցում է իր տիկնիկի հետ, նրան կերակրում, դաս է տալիս, բուժում և այդ բոլորն անում է միանգամայն լուրջ, հավատալով: Աշխարհում ամեն ինչ նրա համար արտակարգ է: Նույնիսկ հավի ձուն չի կարող կոտրվել, նա պիտի պայթի, ինչպես Աթաբեկ Խնկոյանի Իմ դասը, մեկից մինչև տասը սքանչելի բանաստեղծության մեջ: Հենց դրա համար է, որ Հենրիկ Սևանի նկարագրած երեխաները ոչ թե սովորական միս ու արյունից են, այլ չար տղաները՝ կանաչ գորտերից, ծույլ խխունջներից, երկարականջ շըլդիկներից, իսկ խելոք ու բարի աղջիկները՝ «կարկանդակից, մեղրից անուշ, ծաղիկներից, վարդից քնքուշ»: Բոլորովին վերջերս հանդես եկած Էդվարդ Միլիտոնյանի լուսինը, համանուն բանաստեղծության մեջ, սոսկ երկնային լուսատու չէ, այլ երեխայի թաթիկներին լույս ու ստվեր նկարող, պարանոցին ստվերների մանյակ կապող, խայտաճամուկ թիթեռնիկ՝ նրա մազերի մեջ և նույնիսկ խաղալիք:



Ժիրայր Ավետիսյանի Ծովինարի հեքիաթը
գրքի նպատակն է փոքրիկ երեխային ծանո-
թացնել բնության հրաշալիքներին, բայց ծա-
նոթացնել այնպես, որ նա իրեն բնության հե-
քիաթի գործող անձ զգա: Այստեղ Ծո-
վինարը թռչում է կապույտ ձիու մեջքին, հյուր
է գնում տատին ու պապին: Հետո ինքն է հե-
քիաթ հյուսում ճանապարհի, առվակի, ծառե-
րի, ճնճղուկների ու ծղրիդների մասին: Հետո,
ի միջի այլոց, նաև համոզվում է, որ բարի գործը
չի մոռացվում, քանի որ հավատում է, թե եր-
կընքից իր համար թութ գցեց հենց այն ճընճ
ղուկը, որին նա ձմռանը փրկել էր սովամահու-
թյունից:

Քնարականության ու միաժամանակ աշխար-
հը հրաշալիքներով լի մի վայր ներկայացնելու
գեղեցիկ օրինակներ են Աղասի Այվազյանի
կարճ պատմվածքները՝ Երկար ու կարճ ականջ-
ներ, Ամպիկը և այլն, երիտասարդ բանաստեղ-
ծուհի Անահիտ Պարսամյանի Փաթիլը:

Լավն այն է, որ կրտսերների համար գրող
մեր բանաստեղծներն ու արձակագիրները հա-
ճախ նույն կերպ կարողանում են ներկայաց-
նել նաև ոչ ավանդական, այլ ժամանակակից
թեմաները: Այդպիսի բանաստեղծությունների
նմուշներ են, օրինակ, Ռուբեն Սայունցի Իմ
տնակը, Իմ հայելին, Լևոն Աբրահամյանի Օղա-
նավի պատուհանից, Օդամուրճը և այլ գրողնե-
րի մի շարք պատմվածքներ ու չափածո գոր-
ծեր:

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱՆ ԵՎ Մ. ԳՈՐԿԻՆ, որոնք
հույժ կարևորում էին մանկան բնական
զարգացմանը զուգահեռ մանկական գրականու-
թյանը ներկայացվող նորանոր պահանջների
հարցը, բազմիցս անդրադարձել են խրատաբա-
նությանը: Կրուպսկայան մերժում է մերկապա-
րանոց խրատաբանությունը բոլոր հասակների
համար գրվող գրքերում, հատկապես կրտսեր-
ներին հասցեագրված գրականության մեջ: Նը-
ման խրատաբանությունն սպանում է գեղար-
վեստական խոսքը, չի հասնում իր դաստիա-
րակչական նպատակին և, հաճախ, կարող է
խաթարել նույնիսկ հաջողված երկը: Ցավոք,
մեր պարբերական մամուլում և առանձին գըր-
քերում շատ հաճախ վերնագրից սկսած երե-
խան գլխի է ընկնում, թե ի՛նչ են ջանում հաս-
կացնել իրեն. տես, հա՜, խռովկան չլինես,
տե՛ս, չնեղացնես ընկերոջդ, քանի որ ընկերու-
թյունը լավ բան է և այլն: Բայց այդ տարիքում
իմաստուն խորհուրդները չի կարելի շոմփաց-
նել երեխայի ճակատին, դրանք պետք է բխեն
երկի ընդհանուր հենքից, ինքնաբերաբար: Ա-
հա մի օրինակ, թե ինչպես կարող է լավ
պատմվածքը փչացնել մերկապարանոց խրատի
մի պարբերությունը: Չի կարելի փշրել փոքրիկ

երեխայի երազը աշխարհի հրաշալիության մա-
սին: Սա է շնորհալի գրող Վարուժան Նալ-
բանդյանի Մանուշակի հեքիաթը պատմվածքի
գաղափարը, որը նա արտահայտում է սովորա-
կան տոնածառի հանդեսը նկարագրելով որպես
արտակարգ ու հրաշալի մի հեքիաթ: Բայց,
չգիտես ինչու, հեղինակին քիչ է թվում այս
ամենը, նա վախենում է, թե իր փոքրիկ ընթեր-
ցողները կարող են չընկալել երկի դաստիա-
րակչական նպատակը և շտապում է միտքը
հաստատել նաև ուղղակի խոսքով.

— Սեդրա՛կ,— ասում է նա,— քեզ մի տարի
ժամանակ: Եղիր բարի հարազատներիդ ու ըն-
կերներիդ նկատմամբ:

Եվ չար Սեդրակն այս խրատից ազդված, ի-
հարկե, տեղնուտեղը դաստիարակվում է:

ՎԵՐՋԻՆ 4—5 ՏԱՐՈՒՄ դպրոցական միջին
տարիքի համար «Հայաստան» հրատարակչու-
թյունը լույս է ընծայել բանաստեղծությունների
մի քանի ժողովածու (Վահագն Կարենց—
Սպիտակ ձիավորը, Գևորգ Օհանյան— Ման-
կությունից մանկություն, Վարդան Հակոբյան—
Շանթահար կաղնին, Արտաշես Ցավրյան—
Ինչ է պատմում մայրիկը, Վարազդատ Բագրե-
վանդի— Փոթորիկն ու ընկուզենին, Սիմոն
Հակոբյան— Երկնքից ընկած աստղը): Առան-
ձին գրքույկներով հրատարակվել են Լևոն
Միրիջանյանի Միջակ Սոսը պոեմը, Համլետ
Հարյանի Հավլունի թուրը լեգենդը, Քաջիկ
Գրիգորյանի բալլադների Մայիս ժողովածուն
և այլն:

Ի՞նչ ընդհանուր դիտողություն կարելի է ա-
նել բանաստեղծությունների ժողովածուների
մասին:

Նախ՝ պետք է նշենք, որ նեղ են դրանց ընդ-
գրկման շրջանակները: Մեր ժամանակների ե-
րեխան, քաղաքային միջավայրը, դպրոցը,
պիոներական կազմակերպությունը քիչ են հու-
զում մեր բանաստեղծներին: Ժողովածուների
զգալի մասում գերակշռողը դարձյալ առակներն
ու առակատիպ խրատական բանաստեղծու-
թյուններն են՝ ավանդական վերնագրերով. Ա-
պերախտն ու բազեն, Վեճեր լուծող ավանակը,
Այծն ու ուղտը, Հեղեղն ու առուն, Մահն ու
ջանասեր գյուղացին, Թե ինչպես աղվեսները
դարձան խորամանկ և այլն:

Այս և սրանց նման բանաստեղծություննե-
րում նորը, լավագույն դեպքում, սիմվոլիկ կեր-
պարների գործողության միջավայրն է, իսկ
բարոյախոսությունը, որպես կանոն, գալիս է
հնից: Սա էական պակասություն է:

Համեմատաբար բազմազան է Կարենցի ժո-
ղովածուն, որը պարունակում է երեք բալլադ և
տասնութ բանաստեղծություն: Վերջիններիս
մեջ աչքի են ընկնում Հունանի աղբյուրը և
Լենինը լեհ մանուկների մոտ: Առաջինը հայրե-

նիքի համար զոհված մարտիկի անմահության գեղարվեստական հաստատման փորձ է, իսկ երկրորդում պատմվում է հեղափոխության առաջնորդի կյանքի մի դրվագը: Այստեղ թեև հեղինակը նպատակ չի ունեցել, թեկուզ ընդհանուր գծերով, մարմնավորելու առաջնորդի կերպարը, սակայն Լենինի մտերմությունը հասարակ ձկնորսների հետ, նրա սերն ու գորովանքը լեհ մանուկների նկատմամբ ներկայացված են հուզիչ անմիջականությամբ:

Համանման մի փոքրիկ պոեմ ունի Ս. Մուրադյանը Երկնքից երեք խնձոր ընկավ ժողովածուում:

Հիշատակված ժողովածուներում սիմվոլիկ ձևով, կամ անմիջականորեն ներկայացվում են մարդկային բնավորության միայն առանձին գծեր, համակողմանի ու լիարժեք կերպարներ ստեղծելու փորձեր չեն արվում: Այս տեսակետից փոքր-ինչ առանձնանում են, թերևս, մի քանի գրքույկներ:

Գևորգ Օհանյանի Մանկությունից մանկություն ժողովածուն հրատարակվել է Հայրենական պատերազմի հաղթական ավարտի 30-ամյակի կապակցությամբ ու, թեև Օհանյանի ոտանավորը ծանր է, հաճախ անհարկի պաթետիկ, բայց այն հաջող փորձ է՝ պատկերելու Հայրենական պատերազմի տարիների երեխաներին, նրանց ատելությունը գերմանական զավթիչների նկատմամբ, կարոտն ու սերը ռազմաճակատ մեկնած հայրերի հանդեպ, նրանց հավատը, որ հայրերը հաղթանակով կդառնան տուն:

Համլետ Հարյանի Հավլունի թուրը հայկական միջնադարյան ավանդության մշակում է: Հարազատ մնալով սկզբնաղբյուրին, ինչ-որ չափով պահելով նաև դրա լեզվաոճական շինանյութը՝ Հարյանը կարողացել է ստվերագծել իմաստուն Պռոշ իշխանի և նրա ընչաքաղց որդիների կերպարները: Սրանց գժտությունը հասցնում է երկրի կործանման: Չնայած թեմայի հնությանը՝ լեգենդի բարոյախոսությունը միանգամայն այժմեական է: Լեգենդը ժողովուրդների բարեկամության, արդարության ու ազատության զգացումներ է առաջացնում մանուկ ընթերցողների հոգում:

Լևոն Միրիջանյանի Միջակ Սոսը պոեմի հերոսը հեշտ ապրող «միջակ» տղան է, որը չի հետաքրքրվում ուրիշների կյանքով, ջանում է հեռու մնալ «գլխացավանքից»: Միրիջանյանը նրան դուրս է բերում սովոր միջավայրից, ուղարկում գյուղ. այնտեղ նա ամեն քայլափոխում ընկնում է ծիծաղելի կացությունների մեջ, աստիճանաբար փոխվում է Սոսի կարծիքը աշխատանքի և հասարակության մեջ մարդու տեղի մասին:

Քաջիկ Գրիգորյանի բալլադներից մեկը (Բալլադ մայիսի մասին) գրված է պատմահեղափոխական թեմայով: Այստեղ ստվերագծվում է հեղափոխության բոցերի մեջ նետված հայ գեղջուկի կերպարը, դրսևորվում նրա ատելությունը դաշնակ ջարդարարների նկատմամբ, ցույց տրվում, թե ինչպես է նա վերագտնում իր ոտնահարված արժանապատվությունը:

ԲԱՑԻ ԿՐՏՍԵՐՆԵՐԻՆ ՀԱՍՑԵԱԳՐՎԱԾ գործերից, «Հայաստան» հրատարակչության մանկապատանեկան բաժինը լույս է ընծայել մի շարք արձակ գործեր:

Այստեղ կարելի է գտնել ամեն ինչ՝ պարզ, նույնիսկ կրտսերներին մատչելի պատմվածքից մինչև գիտաֆանտաստիկ, պատմահեղափոխական և պատմական թեմայով գրված ծավալուն երկերը: Թեմաների, գրական ժանրերի և ընդգրկման առումով, ասես, աղոտանում են սահմանները: Մեր հիշատակած երկերի մեծագույն մասը թեև մատչելի, բայց այլևս չեն կարող մտնել մանկապատանեկան գրականության մատենագիտության մեջ: Դրանց շարքում կան այնպիսիները, որոնք կարելի է դասել վերջին տարիներս մեծահասակների համար ստեղծված գրականության հաջողված երկերի թվին: Դրանցից է, օրինակ, Վալտեր Արամյանի Թանաքագույն ծաղիկները: Արամյանը կարճ պատմվածքի վարպետ է, ունի իր աշխարհը, կարելի է ասել, նույնիսկ աշխարհները, քանի որ նա նույն հաջողությամբ պատկերում է ինչպես իր մանկության տարիների Երևանն ու Աշտարակը՝ զարմանալի բնական ու ամբողջական մարդկային կերպարներով, այնպես էլ հեռավոր Տայգան և ռուս մարդկանց՝ իրենց հատուկ ազգային խառնվածքով:

Մոտավորապես նույնը կարելի է ասել Հովհաննես Մելքոնյանի Հեռավոր հողի ձայնը ժողովածուի մասին: Նպատակային գիրք է այդ, և նպատակը լավ է արտահայտված վերնագրի մեջ: Ժողովածուում զետեղված են պատմվածքներ և, նույնիսկ, ակնարկներ, բայց բոլորի հիմնական գաղափարը հայրենիքի սիրո ու կարոտի զգացումն է, մարդկությանն ու հայրենիքին ծառայելու գաղափարը: Նույնը կարող ենք ասել Վահագն Գրիգորյանի Թագավորի փոքր որդին, Գևորգ Դևրիկյանի Վիրավոր կռունկ գրքերի մասին, թեև սրանք վերը հիշատակվածներից ու միմյանցից տարբերվում են և՛ թեմաներով, և՛ գրելաձևով:

Այս շարքից փոքր-ինչ տարբերվում են մի քանի այլ գրքեր. Զարզանդ Դարյանի Շուշանը, որի առաջին բաժնում կան դպրոցականների կյանքն արտացոլող հետաքրքրական պատմըվածքներ, Անուշավան Դևկանցի Կաճեթա ծոերը, որը բանահյուսված կարճ զրույցների գե-



ղարվեստական մշակումների ժողովածու է և
այլն:
Ռաֆայել Համբարյանի Գեներալի երրորդ
աստղը փաստագրական վիպակում նկարագըր-
վում է հայազգի գեներալ Խաչիկ Համբարյանի
ռազմաճակատային կյանքը, որն ուսանելի է
միջին տարիքի ընթերցողների համար: Ընդ ո-
րում, գիրքը գրված է արկածային երկերին
հատուկ հետաքրքրաշարժությամբ:
Ինչպես դեդեկտիվ, նույնպես և գիտաֆան-
տաստիկ գրականությունը մեզ մոտ երևան է
եկել միայն հետպատերազմյան տարիներին:
Դեդեկտիվ ժանրի հաջողված պատմվածքներ ու
վիպակներ է գրել Վիկտոր Բալայանը, որոնցում
նա միջին տարիքի ընթերցողներին պատմում
է սովետական միլիցիայի և հետախուզության
բարդ ու դժվարին աշխատանքի մասին, ծանո-
թացնում սովետական օրինականությանը:
Առաջին գիտաֆանտաստիկ երկը Աշոտ Շայ-
բոնի Գիշերային ծիածանն էր, որը հափշտա-
կությամբ ընդունեցին միջին տարիքի ընթեր-
ցողները: Այնուհետև նրա և Կարեն Սիմոնյանի
ջանքերով ստեղծվեց գիտաֆանտաստիկ գրքի
հարուստ մի գրադարան: Ժանրը անցավ զար-
գացման իր բնական ճանապարհը, կարելի է
ասել՝ աստիճանաբար լրջացավ, սոսկ ֆան-
տաստիկայից մինչև գիտական ֆանտաստի-
կան, ապա մինչև հոգեբանական ու ինտելեկ-
տուալ գրքերը, որտեղ ֆանտաստիկան փաստո-
րեն հանդես է գալիս որպես սոսկ միջոց արդի
հասարակությանը հուզող սոցիոլոգիական ու
հոգեբանական պրոբլեմների լուծման որոնման
ճանապարհին: Այդպիսի գրքերից մեկն է Կա-
րեն Սիմոնյանի Ներսես Մաժան դեղագործը:
Ինչ վերաբերում է զուտ միջին դպրոցական
տարիքի ընթերցողների համար գրված գրքե-
րին, ապա դրանք առավել կամ պակաս հաջո-
ղությամբ համապատասխանում են առաջադըր-
վող պահանջներին:
Կամարի Տոնոյանը գրեթե միշտ նախընտրում
է հոգեբանական բարդ հանգույցները: Այսպես,
Գոնե մի բարեկամ պատմվածքում նա նկարա-
գրում է պատանու կյանքում տեղի ունեցած ա-
ռաջին փորձությունը, որը կարող էր խաթարել
նրա հավատը մարդու նկատմամբ, եթե նա
դաստիարակված չլիներ մեր կոմունիստական
բարոյականության սկզբունքներով:
Մելիք Քոչարյանի Գնդապետ Քաջիկը, համե-
մատաբար, ծավալուն կտավ է, դրամատուրգի
առաջին արձակ երկը, որտեղ ռոմանտիկ և
հայրենասեր մանուկները Հայրենական պատե-
րազմի օրերին հայրենիքին ծառայելու ուղիներ
են որոնում և մեծերի օգնությամբ գտնում
դրանք: Բնության և մարդու փոխհարաբերու-
թյուններին են նվիրված Արտավազդ Հովա-
կիմյանի և Վալտեր Թորոսյանի գրքերը: Սրան-
ցում մարդկային բնավորություններ կերտելու
հաջողված փորձեր են արվում:
Ոչ միշտ է, որ մեր գրողները կարողանում են
կարևոր թեմաները վերարտադրել գեղարվես-
տական կատարյալ ձևերով: Քիչ չեն անհետա-
քրքիր ու տարտամ պատմվածքները: Նկատ-
վում է նաև մեր գրողներից մի քանիսի արտա-
կարգ ու խելոք երևալու ճիգը: Երբեմն էլ թե-
ման ժամանակակից է լինում, սակայն պատմ-
վածքը չի հուզում, քանի որ բնական չեն ո՛չ
իրավիճակները, ո՛չ անընդհատ շարունակվող
կարճ երկխոսություններում հոգեբանություն
ստեղծելու՝ հեղինակների ձգտումը:

ԵՐԿՈՒ ԽՈՍՔ ԳՐԱԿԱՆ քննադատության մա-
սին: Ինչպես մեր Միության մյուս հանրապետու-
թյուններում, նույնպես և Հայաստանում մեծ ու-
շադրություն է նվիրվում մանկապատանեկան
գրականությանը: Մանկական լավագույն եր-
կերն արժանանում են պետական մրցանակնե-
րի, բարձրագույն ուսումնական հաստատու-
թյուններում և մանկավարժական ուսումնա-
րաններում ուսանողները մանկական գրակա-
նության կուրս են լսում, մի քանի հաջողված
փորձեր են արվել՝ շարադրելու հայ մանկական
գրականության պատմությունը՝ սկզբից մինչև
մեր օրերը և այլն: Վերջապես, մեզ մոտ էլ
հրատարակվում են մանկական պարբերական-
ներ՝ «Պիոներ», «Պիոներ կանչ», «Ծիծեռնակ»:
Սակայն պետք է խոստովանել, որ վիճակն այն-
քան էլ մխիթարական չէ մանկական գրակա-
նության գնահատման խնդրում: Պետք է գա
մարտ ամիսը, սկսվի մանկական գրքի շաբա-
թը, որպեսզի, օրինակ, «Գրական թերթում» մի
էջ կազմվի, կամ մի քանի թռուցիկ հաղորդում-
ներ երևան մյուս թերթերում՝ տեղի ունեցող
հանդեսների մասին: Գրախոսվում է ամենևին
ոչ ամբողջական արտադրանքը: Միայն հատու-
կենտ գրախոսություններ են տպագրվում այս
կամ այն մանկական երկի մասին, դրանք էլ
մեծ մասամբ պարզունակ անոտացիաների տը-
պավորություն են թողնում, ամենևին չեն դըր-
սևորվում մանկական գրականության ու դրա
տեսության իմացությունը, պրոֆեսիոնալիզմը:
Ընդհանուր առմամբ, այն տպավորությունն է
ստեղծվում, որ շատերի կարծիքով, մանկական
գրականությունը երկրորդ կարգի գրականու-
թյուն է, թեև ամենքն էլ սիրում են կրկնել, թե
մանուկների համար պետք է գրել այնպես վար-
պետորեն, ինչպես մեծերի, միայն ավելի լավ:
Անշուշտ, խիստ դժվար է լավ մանկագիր լի-
նելը, հազվագյուտ ձիրք: Եթե մեծահասակնե-
րի համար գրող տաղանդավոր անհատները
մերթ ընդ մերթ գրում են նաև մանկական լավ

գործեր, ապա, այնուամենայնիվ, մանկական գրականությունը հիմնականում ստեղծվում է այդ գործին կոչված գրողների ջանքերով: «Աղբյուր» և «Հասկեր» ամսագրերում նյութեր են տպագրել Րաֆֆուց ու Պռոշյանից սկսած մեր բոլոր գրողները և, այնուամենայնիվ, դասական մանկական գրականությունն ստեղծել են հիմնականում Թումանյանը, Աղայանը, Խնկոյանը: Նույնն է տեղի ունենում նաև այսօր: Մանկական (երբեմն նաև հաջող) բանաստեղծություններ ու պատմվածքներ են գրում շատերը, բայց կան գրողներ, որոնց կոչումն է մանկական գրականությունը և այդ կոչմանը հավատարիմ ծառայելու համար նրանք տքնաջան աշխատանք են կատարում գործնականում և տեսության մեջ, տարիների ընթացքում ձեռք են բերում պրոֆեսիոնալ ունակություններ և հասնում են լավ արդյունքների: Մինչդեռ, ահա, Լևոն Հախվերդյանը, չգիտես ինչու, ուրախացած գրում է. «Եվ ամենալավ բանը, որ կարելի է ասել մեր «Պիոներ» ու «Ծիծեռնակ» մանկական հանդեսների մասին, հենց այն է, որ վերջին մի քանի տարում նրանք ծալեցին, մի կողմ դրին մանկական ու ոչ մանկական գրական տաղանդների արհեստական զատորոշումը: Հիմա այլևս այնքան էլ ճիշտ չի լինի ասել «գրող չդարձավ, մանկագիր դարձավ»: Հնարովի պատնեշի անէացման հետևանքը եղավ այն, որ մանկապատանեկան գրականությունը հարստացավ մեծապես, ասպարեզ մտան հեղինակներ, որ, թվում է, մանուկ ընթերցողից շատ հեռու էին» («Գարուն», 1975, № 8, էջ 68):

Մենք չգիտենք, թե ի՛նչ պատնեշների մասին է խոսքը, չգիտենք, թե այդ ե՛րբ է եղել, որ մեր ցանկացած գրողը չի աշխատակցել մանկական պարբերականներին:

ՀԱՅ ՄԱՆԿԱՊԱՏԱՆԵԿԱՆ գրականությունը տասներորդ հնգամյակն սկսում է որոշ նվաճումներով ու որոշակի թերություններով: Վերջին տարիների մեծ տեղաշարժերը, մեր կուսակցության իմաստուն նախագծումները՝ հանուն մարդկության բարօրության, հանուն խաղաղության ու երջանկության, երկրի քաղաքական, տնտեսական ու մշակութային աննախընթաց վերելքը դեռևս լիովին չեն արտացոլվում մեր մանկապատանեկան գրականության մեջ: Մենք ոչ մի վայրկյան իրավունք չունենք մոռանալու լենինյան իմաստուն պատգամը գրականության կուսակցականության մասին, որը վերաբերում է նաև մատաղ սերնդի համար ստեղծված գրականությանը, առավել ևս եթե նկատի ունենանք, որ մենք կոչված ենք դաստիարակելու սովետական ապագա քաղաքացուն, կոմունիզմ կառուցողին:

ՍՄԿԿ XXV համագումարը մեր ուշադրությունը սևեռեց սոցիալիստական ապրելակերպի և կոմունիստական բարոյականության ոգով մատաղ սերնդի դաստիարակման հարցերի վրա: Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը ևս պահանջեց նոր սերնդի բոլոր դաստիարակներից՝ առանձնահատուկ ուշադրություն նվիրել սովետական քաղաքացուն աշխատասիրության, կարգապահության, ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության ոգով տոգորելու ու կրթելու շնորհակալ պրոբլեմներին: Այս առումով անսահման են մանկապատանեկան գրողների ստեղծագործության շրջանակները:

Այն, ինչ ստեղծվել է տարիների տքնաջան աշխատանքով, հիմք է տալիս հավատալու, որ սովետահայ մանկապատանեկան գրականությունը, որը, ինչպես միշտ, կանգնած է գաղափարական ու գեղագիտական ճիշտ ճանապարհի վրա, կարող է և կծառայի այս վեհ նպատակին: Դրանով էլ կչափվի մեր՝ սովետական գրողներիս, քաղաքացիությունը:

---



Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 05545 Պատվեր 1241 Թղթի չափսը 70×108 1/16, Տիրաժ 14.400 Գինը 20 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 15/VI-1976 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի Հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Л. А. АПОЛЛОНОВ — **Верховный орган ленинской партии.**
Очерки истории партийного строительства. М. Политиздат, 1976.
**Ум, честь и совесть нашей эпохи.** Документы и материалы о
КПСС. М., Политиздат, 1976.
**Борьба идей в современном мире.** Том 2. Современный капитализм: противоречия и доктрины. М., Политиздат, 1976.
Ф. А. АМИРДЖАНЯНЦ, Л. И. МАКСИМОВ — **КПСС и научно-технический прогресс в СССР.** М., Политиздат, 1976.
**Международное рабочее движение.** М., Политиздат, 1976.
Г. Т. ЖУРАВЛЕВ. — Научные основы управления идеологи-
ческим процессом. Изд. Знание, 1976.
Պ. ԱԶԻԶԲԵԿՈՎԱ, Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Մեշադի Ազիզբեկովը՝ բոցաշունչ ին-
տերնացիոնալիստ: *«Հայաստան» հրատ., 1976:*
Ա. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ— Ընդդեմ պատմության դաշնակցական նենգափոխության:
*«Հայաստան» հրատ., 1976:*
Էդ. ՋՐԲԱՇՅԱՆ— Պոետիկայի հարցեր: *«Հայաստան» հրատ., 1976:*
Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ— Ժամանակի հետ: *«Հայաստան» հրատ., 1976:*
Ի. ԼԱՎՐԵՑԿԻ— Էռնեստո Չե Գևարա: *«Հայաստան» հրատ., 1976:*
А. АРЗУМАНЯН — **Братья Орбели.** Изд. «Айастан», 1976.
А. А. ГРЕЧКО — **Годы войны. 1941—1943.** Воспоминания.,
Воениздат, 1976.
**Комплексный подход идеологической работе.** Стиль и методы.
М., Политиздат, 1976.
**Современная революция в биологии.** Фило-
М. Г. ЧЕПИКОВ —
софский анализ. М., Политиздат, 1976.
Ակնարկներ հայ տնտեսագիտական մտքի պատմության: *Եր.*
Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ—
*Համալսարանի հրատ., 1976:*
Պետական բյուջեն ֆինանսական պլանների համակարգում:
Ի. ԱՎԵՏԻՍՅԱՆ—
*Եր. Համալսարանի հրատ., 1976:*
Տնտեսական հաշվարկի առանձնահատկությունները սոցիալիս-
Հ. ԶԱՔԱՐՅԱՆ—
տական գյուղատնտեսական ձեռնարկություններում: *Եր. Համալսարանի հրատ., 1976:*
Ավտոմատիկայի հիմունքները և արտադրական պրոցեսների
Լ. ԳԻԼԱՆՅԱՆ—
ավտոմատացումը: *Ե., «Լույս»: 1976:*
Աշխատանքի արտադրողականության
ՅՈՒ. ՍՈՒՎԱՐՅԱՆ, Գ. ՏԵՐՏԵՐՅԱՆ—
բարձրացման նյութական խթանումը արդյունաբերության մեջ: *Եր. Համալսարանի*
*հրատ., 1976:*
**Характер труда в**
Р. К. ИВАНОВА, И. Я. ОБЛОМСКАЯ —
**условиях социализма.** М., «Экономика», 1976.
**Оргтехника в управлении.** М., Политиздат, 1976.
**Повышение стимулирующей роли за-**
Л. Э. КУНЕЛЬСКИЙ —
**работной платы и оптимизация ее структуры.** М., «Экономика», 1976.
**Трудовые ресурсы: формирование и использование.** М., «Эко-
номика», 1976.
**Океан: экономические проблемы освоения.** М., «Экономика», 1976.
**Экономическое образование трудящихся и эффективность про-
изводства.** Сборник статей. М., Политиздат, 1976.
**Соревнование и качество продук-**
В. БЛЮХЕР и В. ЖУКОВ —
**ции.** Профиздат, 1976.
**Антисоциалистическая сущность маоиз-**
О. М. РОМАНЕНКО —
**ма.** Изд. «Международные отношения», 1976.

ԳԻՆԸ՝ 20 Կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՁԵՌՔԻ ԺԱՄԱՑՈՒՅՑԻ ՆՈՐ ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ

Ամերիկյան և ճապոնական մի շարք ֆիրմաներ թողարկվող էլեկտրոնային ժամացույցներին (որոնցում լուսավորված են վայրկյանները, րոպեները, ժամերը, օրերն ու ամիսները) ավելացրին զարկերակի ինդիկատոր: Ժամացույցի տակի կափարիչին ամրացված ճառագայթող դիոդի լույսը մաշկի միջով անցնում է դեպի արյունատար մազանոթներով հարուստ հյուսվածքը: Դետեկտորն ընդունում է այդ հյուսվածքից անդրադարձած լույսը, որը հաղորդում է տեղեկություններ սրտի աշխատանքի վերաբերյալ, որոնք թվով արտահայտվում են ինդիկատորի վրա: Այդ ժամացույցները կօգտագործեն տարբեր հիվանդություններով տառապող հիվանդները, ինչպես և ֆիզիկական և էմոցիոնալ ծանրաբեռնվածություն ունեցողները:

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՄԵՔԵՆԱՎԱՐ

Երկաթուղային տրանսպորտի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները մշակել են գնացքների վարման էլեկտրոնային նոր սիստեմ, որը կոչվում է «ավտոմեքենավար»: Մեքենավարի խցիկում տեղադրված պերֆոքարտ ծրագրային սարքի վրա կոդավորված են երթուղու բոլոր յուրահատկությունները: Էլեկտրագնացի անիվներին ամրացված հատուկ հաղորդիչներն ընդունում և սիստեմի հիշողությանն են հաղորդում երթուղում կատարված փոփոխությունները, ճանապարհի վիճակի մասին ստացած տեղեկությունները: Էլեկտրոնային մեքենավարը դրանք համեմատում է առաջադրանքի հետ և, հարկ եղած դեպքում, փոփոխում ծրագիրը: Նոր սիստեմի օգտագործումը թեթևացնում է երկաթուղայինների աշխատանքը, դարձնում այն ավելի անվտանգ:

## ԲԵՎԵՌԱԽՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ՀՐԳԵՀԱՇԵՋՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Նյութագիտությամբ զբաղվող գիտնականների աշխատանքները հանգեցրին չհրկիզվող, ածխաջրաքարն առանձին նրբաթելի ստեղծման, որը հիանալի էլեկտրահաղորդիչ է: Այժմ թողարկվում է հատուկ գործվածք, որի կիրառման ծավալն աստիճանաբար ընդլայնվում է: Դրանից կարվում են էլեկտրահաղորդ արտահագուստներ հյուսիսում աշխատողների՝ շինարարների, կոմնկավարների, երկրաբանների, զոդողների և ալպինիստների համար. պատրաստվում են և վրաններ, գորգեր, պաստառներ սառնամանիքի ժամանակ բևեռը ծածկելու համար: Բավական է այդպիսի հագուստը, գործվածքը կամ կոշկեղենի միջատակը միացնել 6—12 վոլտանոց հոսանքին, դրանք սկսում են լավ տաքանալ: Այս չհրկիզվող գործվածքը հարմար է նաև հրդեհաշեջների համար:

## ԱՎՏՈՄԱՏ-ՊՈԼԻԳՐԱՖԻՍՏ

Ֆոտոշարվածք... Դրա կիրառումը կատարյալ հեղաշրջում է տպագրության բնագավառում:

Բացի աշխատանքային պայմանների բարելավումից, դրա շնորհիվ տնտեսվում է հարյուրավոր տոննա անավոր մետաղ, կրճատվում է [illegible] դների թիվը, փոքրանում արտադրահրապարակը: Բայց ամենակարևորը՝ զգալիորեն բարելավվում է շարվածքի որակը: Մեր երկրում ավտոմատ-ֆոտոշարվածքներ է թողարկում Լենինգրադի տպագրական մեքենաների գործարանը: Այժմ այնտեղ պատրաստվում են բարձր արագությամբ ավտոմատներ, որոնք հնարավորություն են ընձեռում մեկ րոպեում հավաքելու միջին չափի գրքի մոտ 10 էջ: 1,5—2 անգամ բարձր կլինի այդ ավտոմատների արտադրողականությունը, չափսերը և քաշը՝ երկու անգամ փոքր: Մշակվում են մեծ քանակությամբ նոր տառատեսակներ, որոնց օգնությամբ կշարվեն գրքեր ինչպես ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների, նույնպես և լատինական տառատեսակներ օգտագործող լեզուներով:

## ԺԱՄ-ԱՎՈՐ ԳՐԻՉ

Ճապոնական ֆիրմաներից մեկը թողարկել է գնդիկավոր ինքնահոս, որն ունի ութանիշ թվով գործողություն կատարող փոքրիկ էլեկտրոնային հաշվիչ սարք: Այն ունի անուցիչ աղբյուր, հինգ փոքր ստեղներ և թվահավաք միացուցիչ, որն անհրաժեշտ է թվաբանական բոլոր գործողությունների համար: Փոքր էկրանի վրա լուսավորված թվերը ցույց են տալիս նախնական տվյալներն ու գործողության արդյունքները: